# ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ
## ԹՈՒՂԹՔ ԵՒ ՆԱՄԱԿՔ
## Տ. ՆԵՐՍԷՍԻ
## ՇՆՈՐՀԱԼՒՈՅ
## ՍՐԲԱԶԱՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ
## ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ՓՈԽԵԱԼ

Ի ՅԱՇԽԱՐՀԻԿ ԼԵԶՈՒ



ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ
Ի ՏՊԱՐԱՆԻ Ն. ԵԳՂԱԿՆԻՈՑ
— 1853 —

ՀՐԱՄԱՆԱՒ

Տ. Տ. ՅԱԿՈՎԲԱՅ

ԱՌԱՔԵԼԱՇՆՈՐՀ

ԱՐՀԻԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ

ԱԶԳԱՍԷՐ ՊԱՏՐԻԱՐՔԻ

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ



Ս. Ներսես Շնոր՟.

# ՍՐԲԱԶԱՆ ՆԵՐՍԷՍ
## ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ
# ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ
## ԹՈՒՂԹՆ Է
### ԲՈԼՈՐ ՀԱՅՈՑ ԱԶԳԻՆ ԳՐԱԾ
## ՈՐՈՆՑ ՎՐԱՅ
# ԱՍՏՈՒԱԾ
### ՏԵՍՈՒՉ ԴՐԱՒ ԶԱՆԻԿԱՅ

---

ՔՐԻՍՏՈՍԻ Ծառայ Ներսէս ու Նորին ողորմութեամբը Հայոց Կաթուղիկոս արևելից կողմը Հայաստանեայց սեպհական աշխարհին մէջ բնակող, և արևմտեան կողմերը պանդխտութեամբ գըտնացող, և միջերկրեայ տեղուանք՝ այլայլեզու ազգաց մէջ ցրուած, և մեր մեղացը համար աշխարհիս ամեն մէկ կողմը քաղաք-

ներու , դղեակներու , գեղերու ու ագա-
րակներու մէջ տարտղնած Հայազգի ընդ-
հանուր հաւատացեալներուն , և անոնց ա-
մենուն քահանայապետներուն ու քահա-
նայներուն , վանականներուն ու քաղաքա-
ցիններուն , իշխողներուն ու իշխեալներուն ,
զինուորաց դասերուն , թէ ձիավարժներուն
ու թէ հետևակներուն , գաւառապետնե-
րուն ու գործակալներուն , տանուտէրնե-
րուն ու երկրագործներուն , վաճառական-
ներուն ու արուեստաւորներուն և իրենց կա-
մացը ու յօժարութեանը համեմատ կեն-
ցաղոյս այլ և այլ ճանապարհները գացող-
ներուն , արանց և կանանց , մանկանց և ե-
րիտասարդաց , չափահասներուն և ծերե-
րուն , անոնց որ աշխարհիս օրինացը համեմատ
կը վարուին , և անոնց որ վարուք գերաշ-
խարհիկ են , Աստուածընկալ ու փրկական
սուրբ Նշանէս և Հոգւոյն Սրբոյ հրեղէն
լեզուները ընդունող Առաքելական նշխար-
ներէս , և մեր սուրբ Լուսաւորչին աջէս ու
աթոռէս խաղաղութեան ու սիրոյ ողջոյն
հասնի : Որոնց առջևը ձեր հոգւոց փրկու-
թեանը համար առ Աստուած աղաչելով կը
պաղատիմք , որ ձեր մտաց ականջները բա-
նայ , Աստուծոյ պատուիրանքներէն ձեզի

գրուցելու համար պատրաստած այս Աստուածային խօսքերուս ունկնդիր ըլլալու, որպէս զի մեզմով արդարութեան շաւիղը մըտնելով, ձենէ ամեն մէկը արժանի ըլլայ երկնաւոր Հօր տանը օթեւաններուն մէկուն ժառանգաւոր ըլլալու ։ Նաեւ ես ալ կը խնդրեմ ամենքնէդ որ մեզի համար աղօթք ընէք, որ ձեզի համար Աստուծոյ տալու տնտեսութեան համարս աղէկ տամ ինձմէ պահանջած ժամանակը ։

Գիտցած եղի՛ք ամենքդ, որ Սրբազան Գրիգորիոս Կաթուղիկոսը, մեր հոգեւոր հայրը ու մարմնաւոր եղբայրը, Հայաստանեայց մեծ Լուսաւորչին աթոռակալը ու. ազգականը և իւր անձին մաքրութեամբն ու իմաստութեամբը անոր նմանողը, որն որ երկար ժամանակ աղէկ հովուեց այդ բանաւոր հօտը, զորն որ Քրիստոս ըստ Պետրոսի յանձնեց անոր ըսելով թէ «Արածէ իմ ոչխարներս», իւր հասակին ծերութը հասնելով, նէհպտոց կարգին նման՝ իւր վախճանէն առաջ Սբ Հոգիէն անոր ազդուած ըլլալով, կանչեց եպիսկոպոսները և վրդ̃պտները սուրբ լեռան մէջ ճգնող հայրերը, ու այլ և այլ կողմերը եղողները. և թէպէտ անոր այս գործերուն մէջը շատ անգամ մեզ կանչե-

լէն առաջին անգամները կը հրաժարէինք ինքզինքնիս անարժան սեպելով, բայց հիմա զմեզ ակամայ ստիպելով, ինքն ու եպիսկոպոսաց ժողովքը՝ մեր անարժանութիւնը Խորգոմայ տանը ու Հայկայ ազգիս Կաթուղիկոսութեան աթոռը ձեռնադրեց ։ Ի վերուստ իրեն տրուած հրամանը կատարելէն երեք ամիս ետքը, որպէս թէ Քրիստոսէ կանչուելով փախճանեցաւ ու դասակից եղաւ Հայրապետը՝ որբազան Հարց հետ. երկնաստանից լրումը՝ առաքելոց հետ. հալածանաց ու ճշմարտութեան հակառակորդներէն առաջ եկած զանազան փորձութեանց մէջ համբերողը՝ արդարութեան համար հալածուողներուն հետ. կենաց մէջ յԱստուծոյ և 'ի մարդկանէ պատուեալը՝ փառաւորեալներուն հետ ։ Որուն մահը Այ առջեւը պատուական եղաւ գերագոյն սրբոց նման, որոնց համար Մարգարէն կ'ըսէ ։ Ինքը աշխարհիս ծովուն մէջը հաւատոյ նաւովը ու հոգւոյն հողմովը՝ ճշմարտութեամբ ու առաքինութեամբ ուղղակի նաւապետելով, առանց վնասի խաղաղ ու առանց ալեաց նաւահանգիստը հասնելով, թողուց մեզի տաժանելի ու ցաւալի կենացս մէջ, օձերու, կարիճներու, երեւելի ու աներեւոյթ զա-

նազան խանձանող գազանաց մէջ, և չէ թէ միայն այս, այլ և հոգևոր ու մարմնաւոր ծանըր բեռներու տակ։ Այս կիրքերէն թեթեցած ինքն իմանալեաց կայանքը թռաւ, մեր տկար ու անզօր անձին յանձնելով կընակնիս վերցընել ամեն եկեղեցեաց հոգերուն ծանրութիւնը։ Աս հիմա այս հոգերուն մէջը ըլլալով կը զարհուրիմ Աստուծոյ դատաստանին ահէն ու երկիւղը միտքս բերելով, որ հովուաց ու առաջնորդաց համար Հին ու Նոր կտակարանաց մէջ գրուած է, անանկ որ հոգիս չարչարուելով ասոնց երկիւղէն, ոչ աչացս քուն կընամ կոր տալ, և ոչ արտևանունքներուս մրափ։ Ինչու որ շատ ու զանազան անուններու ու գործերու կը բաժնուի ոգւոց տեսչութեան այս մէկ գործը, որ Կաթուղիկոսութիւն և Հայրապետութի, Եպիսկոպոսութիւն ու Քահանայութիւն կը կոչուի. և մէկզմէկէ աւելի ու պակաս է, վասն զի ասոնց մէջը մեծ եղածը ծանըր բեռան տակ է, մէկալ գործերը իր հետը ունենալուն համար։ Բայց գործին նայելով ամեն մէկունն ալ թէ քահանայութեան ու թէ քահանայապետութեան անուանադրութիւնները մէկ են։ Վասն զի ծընող, դայեակ, վարդապետ, բժիշկ, դէտ,

հովիւ, առաջնորդ, միջնորդ, դատաւոր, ու այլ շատ անուններ ալ կը կոչուին. որոնցմով Աստուածպաշտութեան խորհուրդը կը կատարի ու Քրիստոսի եկեղեցւոյն օրէնքը ամբողջ կը մնայ։ Եւ արդ մէկը ի՞նչպէս կրնայ մօրմէն օտար եղողներուն ծնող կամ Պօղոսի ըսածին պէս դայեակ ըլլալ, որ կ՚ըսէ, իմ զաւկըներս, որոնց ծնանելու ցաւը նորէն կը քաշեմ, մինչև Քրիստոս ձեր մէջը նկարուի. դարձեալ դայեակի մը պէս որ տղաք կը սնուցանէ, այնպէս ձեզի կը գթայինք։ Ինչու որ ծնեալները բնութեամբ իրենց ծնողը կը սիրեն, և սնեալներն ալ իրենց դայեակը։ Իսկ որոնց մէջը որ սիրոյ փոխարէն ատելութիւն ու օտարութիւն կայ նէ, անանկները վերստին Աստուածեղէն բանիւ ապաշխարութեան ծնանելու կամ հայրական խրատով ու Աստուածային երկիւղիւ զանոնք սնուցանելու ի՞նչ յոյս կրնայ ըլլալ։

Ի՞նչպէս հնար է՝ վարդապետ, ուսուցիչ ու քարոզ ըլլալ, ըստ հրամանին Աստուծոյ Սիօն բարձր լերան վրայ ելլել, որ սուրբ Եկեղեցին է. և Աւետարանին խօսքը բարձրացուցանել ու չվախնալ. կամ Պօղոսի Տիմոթէոսի գրածին պէս, պատեհ ու

անպատեհ ժամանակ քարոզել, յանդիմանել, սաստել ու մխիթարել. ուր աշակերտեալները ցրուած են, ու վարժարանին մէջ չեն ժողվուած. և չէ թէ ճշմարիտ իմաստութեան վարժութիւնը սիրող են՝ հապա ստութիւն ու նանրութիւն կը սիրեն. չարութեան կողմը կատարեալ են, ու առաքինութեան կողմը տղայ են։

Ինչպէս բժշկական գործին նմանող կրնամք ըլլալ, կամակոր վիշապին խայթուածէն հիւանդացած ոգիներուն, բնաւորական կամ անբնական ախտերէն բժշկել ջանալով. ուր հիւանդները չէ թէ միայն հոգևոր բժիշկներուն առողջարար արուեստները չեն փնտռեր՝ այլ չեն ուզեր օգտակար դեղերն անգամ խմելու. եթէ մէկը զանոնք յանդիմանէ կամ խրատէ, ստամոքսացաւ ունեցողներուն նման, որ գէշ մաղձով ապականած են։ Այս մէկդի, այլև դէմ ալ կը զրուցեն անոնց ըսելով թէ, բժի՛շկ, նախ ինքզինքդ բժշկէ այդ ցաւերէն՝ և ետքը յանդիմանող խօսքերովդ ինծի մօտեցիր։ Կամ մենք այնքան տեղով ու սիրով հեռացողներուն ի՞նչպէս հնար է տեսուչ ըլլալ, Աստուծոյ առ Եզեկիէլ ըրած հրամանին համեմատ թէ, Որդի՛ մարդոյ, քեզի Իս-

րայելի որդւոցը վրայ տեսուչ դրի․ որ եթէ պօռալով չիմացուննես անոնց թշնամւոյն որոգայթը ու ասպատակութիւնը , և անոնք սպաննուելին կամ գերի երթան , անոնց արիւնը քենէ պիտի խնդրեմ ։ Ասոնց մէջ միայն սա միւս խօսքը մխիթարութիւն ունիմք․ որն որ նոյն Մարգարէին կ'ըսէ Ած․ որ եթէ քու ձայնդ լըսեն , ու անզգոյշ ըլլալով կորսուին , դուն քեզ ապրեցուցիր և իրենց արեանը իրենք պարտական ըլլան ։ Ինչպէս հնար է մեզի՝ հովիւն ու հօտը իրարմէ շատ հեռու գտնուելով հովուութեան օրէնքը կատարել , Աստուածային օրինաց դալար տեղըւանքը հանգչեցընել , ու կենդանարար ջրովը այսինքն Սուրբ Հոգւոյն իմաստութեամբը սնուցանել , գայլերը հալածել , վիրաւորեալները բժշկել ։ Ինչպէս կարելի է մեզի այնպիսիներուն առաջնորդ ըլլալ , որոնք չեն ուզեր որ իրենց առաջնորդին հետևելով , դէպ 'ի երկինք տանող արքունական ճամբան երթան , այլ դըժոխոց յատակը տանող լայն ու ընդարձակ պողոտան կ'ուզեն երթալ ։ Ինչպէս կրնանք միջնորդ ըլլալ Աստուծոյ ու այն մարդոց մէջ տեղը , որոնք դրած ուխտերնուն դաշինքը չեն ուզեր պահել , զորն որ մկրտութե՝ սա-

սատանայէն ու անոր ամենայն գործերէն ու պատրանքներէն հրաժարելով՝ Աստուծոյ հետ դրին, այլ փրկութեան օրը Հոգ-ւոյն Սրբոյ հետ դրած ուխտերնուն պատ-ուիրանազանց ըլլալով, բանիւք և գործովք յօժար կամօք բանսարկուին ետևէն կ'եր-թան : Ինչպէս կրնամք Քահանայապետու-թեան դատաւորութիւնը գործածել այնպի-սի ազգի մը, որն որ չէ թէ միայն Աստ-ուածային օրինաց դատաստանին տակը չեն խնար ու չեն հնազանդիր, այլ և Եկե-ղեցւոյ դատաւորաց՝ անիրաւութեան դա-տաւոր կը նստին, և իրենք գերանը իրենց աչքին մէջը, չարաչար բամբասանօք ու ան-դուռն բերանով, անոնց վարուց յանցանաց շիւղը կը դատեն :

Ուստի ասոնք այսպէս ըլլալով կը զար-հուրիմ ու Աստուծոյ դատաստանաց երկիւ-ղէն կը դողամ, որ չըլլայ թէ Աստուծմէ ինծի յանձնուած այս տնտեսութեան գոր-ծը՝ փառաց տեղը անարգութեան պատճառ ու խոստացած անթառամ պսակաց տեղը երեսիս ամօթ ըլլայ : Նա իրենց տիրոջմէն առած տաղանդները յարգող ու տիրոջը շահ բերող ծառայներուն պէս, ծառայ բարի և հաւատարիմ խօսքը լսելու տեղ, չըլլայ որ

այն շա՜տ չքերող ծառայլին ըրած սարսափելի ու ահագին հրամանը լսեմ թէ, ծառայ չար ու վատ. պէտք էր քեզի, որ իմ խօսքիս արծաթը սեղանաւորներուն այսինքն մարդկան ոգիներուն տայիր, և ես կուգայի տոկոսով կը պահանջէի իմինս, այսինքն քեզնէ լսած խօսքերնուն հետը մէկ տեղ գործոց կատարում կ'ուզէի լսողներէն։ Որովհետեւ դուն քու ծառայակիցներուդ հոգւոց կերակուրը չէ տուիր երբոր լսելու ժամանակ էր. ուստի կ'ըսեմ, առէ՛ք ատկէ իմ շնորհաց արծաթս, ու իմ խօսքս կատարելապէս աճեցընողին տուէք, տասը քանքարին թուոյն համեմատ, և այդ ծառան՝ որ իմ դրած գործիս մէջը անպիտան գտնուեցաւ, արտաքին խաւարը հանեցէ՛ք։

Հիմա ի՞նչ ընեմ, որ իմ անձս այս ահագին սպառնալիքներէն ազատ, շատ կը տարակուսիմ։ Ինչու որ աշխարհիս ամեն կողմը պտըտիլ ու սուրբ Առաքելոց նման ամենուն Աստուծոյ խօսքը քարոզելը, անկարելի է ժամանակիս չարութեանը ու շատ իշխաններ ըլլալուն համար։ Այս ազգերնիս ալ թագաւորական ու բազմաժողով քաղաք մը չունի, որ այն տեղ Հայրապետութեան ու վարդապետութեան աթոռը նստելով, առջի

հայրապետներուն ու վարդապետներուն նը-մա՛ն՝ Ընծային պատուիրանքները ժողովուրդին սորվեցընէինք ։ Ըսկ այծեամի նման որսորդներէն ու շուներէն փախած այս քարանձաւին մէջ կը բնակինք , ուր մարմնաւոր պիտոյքնիս անգամ չենք կրնար լեցընել . գեղերէն ու ագարակներէն , որոնցմէ ալ զուրկ ենք ։ Նաև անդաստան մ'ալ չունինք , որ աշխատութեամբ մեր պիտոյքը հոգայինք . և տեղէ մը օգնութիւն ալ չունինք , Քրիստոսի հաւատացող իշխաններէն ու Թագաւորներէն , ինչպէս որ արժան էր ։ Ըսկ մի միայն Աստուծմէ Մարգարէին խրատին համեմատ որ կ'ըսէ քու բոլոր հոգըդ Տիրոջը ձգէ , ու ան քեզ կը կերակրէ ։ Նաև դարձեալ թէ , ո՛վ յուսաց Աստուծոյ ու ամչցաւ ։

Որովհետև ասանք այսպէս են և Քրիստոսէ բանաւոր հօտը՝ անոր աստուածեղէն վարդապետութեանցը մէջ չարածող , ու Աստուծոյ իմաստութեան կենդանի ջուրը չի խմցընող , ծոյլ ու պղերգ հովուաց վրայ Աստուծոյ դատաստանին սպառնալիքները աններելի են ։

Նաև որովհետև այս հոգևոր անտեսութեան վիճակը իմ տկարութեանս ինկաւ , որ ամենևին ոչ հոգւոյ արթնութիւն , և ոչ

մարմնոյ զօրութիւն ունիմ. և ոչ բարի ժամանակի պատահած եմ ինչպէս որ վերը գըրեցի ։ Ասոր համար չեմ գիտեր թէ ի՞նչ ընեմ ։ Հովուապետին հօտերը հովուութեան խնամքէն թողուլը ու գայլերուն գառները յափշտակելը տեսնելով՝ անտես առնելը անհաւատութեան նշան է . մանաւանդ Աստուծոյ կամքը գիտցողի մը և չէ թէ չգիտցողի մը ։

Ինչու որ եթէ մէկը տգիտութեամբ անպատշաճ բան մը գործէ նէ , տէրունական հրամանին համեմատ ծեծ կ'ուտէ , բայց քիչ. բայց եթէ գիտութեամբ ընելու ըլլայ , շատ ու սաստիկ կ'ուտէ ։ Թէպէտև հիմա մէկը չի կայ որ չարը՝ բարին իրարմէ զատելու տըգէտ ըլլայ , թէև կամաւ տգիտութիւն ցուցընէ ալ նէ ։ Իսկ աստիճանիս գործին համեմատ խրատելու ու սովրեցընելու ջանալը ու միշտ լեզուով՝ Քրիստոսէ տղայացեալներուն հոգւոց բերանը Աստուծոյ բանին կաթը տալը ու այս գործը ինքիրեննուս գըլուխ տանելը անհնարին է այս ժամանակիս ու տեղերընուս ։ Բայց չըլլայ թէ բոլորովին անպատուղ ըլլանք Սուրբ Հոգիէն մեզի յանձնուած հաւատացեալ ժողովուրդներընուդ . արդարութեամբ մենք մեր քովը եղած ե-

պիսկոպոսներովը ու վարդապետներովը դատեցինք, որ Հին ու Նոր կտակարաններուն մէջը յԱստուծոյ պատուիրեալները գրով ձեզի յիշեցընենք: Այս գործին մէջը Պօղոս մեծ առաքելոյն նմանելով, որ չէ թէ միայն օտար աշխարհքներ պտըտելով աւետարանը կը քարոզէր. ինչպէս և ինքն ալ կ՚ըսէ թէ Երուսաղէմէն մինչև ՚ի Իլիւրիկիա, այլև կապանքներու մէջ եղած ատեններն ալ. թուղթերով աշակերտեալները կը հաստատէր, ինչպէս այս խօսքը գրելով կը յայտնէ թէ, կ՚աղաչեմ ձեզի ես, որ Աստուծոյ համար կապեալ եմ, կոչումներնուդ արժանի գործ գործեցէք:

Որուն հետ և մենք ալ իբր կամաւոր բանտէ ու կապանքէ, այս նեղութեան տեղս արգիլուած, իբր բերնով մեր ձեռքին գրովը կը խօսիմք ամենուն հետ, որոնք որ լսելու ականջ ունին: Չէ թէ մեր խօսքը, այլ առաքելոց, մարգարէից ու եկեղեցւոյ վարդապետաց խօսքը, անոնց խօսքերուն զօրութը ձեր ականջին երկրորդելով: Որոնք եթէ լըսելով յօժարութ̃ միտ առնէք, ինտոր որ աղէկ ու պարարտ երկիրը իւր մէջը սերմանեալները, և գործով ալ Ա̃ծյ պտուղներ ըլլայ. ձեր անձանց փրկութ̃նը ու մեր վարձք առնելուն

պատճառ կ՚ըլլայ ։ Ապա եթէ մէկը յօժարութեամբ՝ մտիկ չըլնէ, այլ Աստուծմէ ապստամբածի պէս արհամարհէ․ և կամ թէ լսելով՝ գործով արդարութիւն չի պտղաբերէ․ այլ անզեղջ հոգւով ու յամառ սրտիւ մինչև վերջը անյուսութեամբ մեղաց մէջ անդարձ մնայ․ մենք Քրիստոսի առջևը, Աստուծոյ ու անոր հրեշտակաց ու ձեր ամէն լսողներնուդ վկայութեամբը անոր արիւնէն անպարտ ենք, քանզի չի քաշուեցանք ու չարգիլուեցանք անոր Աստուծոյ բանը պատմելէն ։ Այս արդ ինչպէս որ մարմնոյ մասանցը մէջ ամէնէն աւելի պատուականն ու առաջինը գլուխն է, ուղղւոյն բարձրութեանը ու բոլոր զգայարանքները անոր վրայ ըլլալուն համար․ և ետքը ուրիշ անդամները իրենց կարգովը, նոյնպէս ալ հոգւոյն անդամոցը մէջ գլխոյն պէս մեծն ու առաջինը հաւատոյն ճշմարտութիւնն է․ և անձը գլխուն հետ յարմարելուն պէս արդարութեան մեծ ու պզտիկ գործքերը՝ Քրիստոսի Աստուծոյ պատուիրանացը համեմատ անոր հետ համեմատած է ։

Ասոր մենք ալ նախ և առաջ ամէն բարութեանց գլուխ հաւատոյ ձեռք զարնելով անիկա ձեր լսողներուդ առաջը դնենք․ չէ-

թէ նոր բան մը գրելով, այլ համառօտ խօսքով Առաքելոց և Մարգարէից և սուրբ Հարց հիման վրայ շինելով, որպէս զի՝ չըլլայ թէ ազգայիններէն անանկ խօսք լսելով, որ ուղղափառ եկեղեցւոյ դաւանութեանը համեմատ չէ. այլ Աստուածաշունչ գիրքէն դուրս կը խօսին, լողները կործանելու համար՝ ճշմարտութենէ մոլորի: Նաև գիտնաք թէ մկրտութեան օրը արդեօք ո՞րի հաւատացիք. Պօղոսի ըսածին համեմատ թէ գիտեմ որու հաւատացած եմ: Նաև կամ թէ ուղղափառ քրիստոնեայ մը ի՞նչպէս պէտք է հաւատոյ դաւանութիւնը ունենալ, որուն հիմն պարզ ու յայտնի խօսքով կ'սկըսիմք հաւատոյ ճշմարտութիւնը ցուցընել:

Քրիստոսի երկրպագութիւն ընողներուն և յանուն սուրբ Երրորդութեան մըկրտուածներուն պարտ ու արժան է Հօր, և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ երեք անձնաւորութիւնը համագոյ, մի բնութիւն, մի Աստուածութիւն. մի իշխանութիւն, համապատիւ և զուգափառ խոստովանիլ: Ո՛չ մէկէ մը եղած է, ո՛չ ետքէն սկսուած, ո՛չ խոնարհութենէ՝ ի բարձրութիւն ելած, կամ ակարութենէ զօրութեան փոխուած, այլ յառաջ քան զամենայն յաւիտեանս էր,

Հիմա ալ է · և անվերջ յաւիտեանս պիտի մնայ ։ Անեղ ու անմահ էութիւն, բնութենէ աներևոյթ, արարածոցս համար երևելի, ամէն բան տեսնող, ամենէն անտես է ։

Հայր՝ անսկիզբն ու անծին, Որդի՝ Հօր բնութենէ ծնած, այլ անժամանակ · չէ թէ մարդկան ծննդեան պէս ախտաւոր ու փոփոխական, զորն որ միտքէ անցնելը անգամ հայհոյութիւն է, թող թէ խօսքով ըսելը ։

Այլ իբրև լոյս 'ի լուսոյ, և հուր 'ի հրոյ, որոնք բաժնուած ատեննին օտար չեն · այլ հուրն ալ լոյսն ալ ծնածն ալ ծնանողն ալ մէկ ճառագայթ և մէկ ջերմութիւն ունին ։ Երկուքին ալ բնութիւնը մէկ է, թէպէտ իրարմէ անձամբ կը բաժնուին ։ Նոյնպէս ալ լոյս Որդին՝ 'ի լոյս Հօրէ, ու Որդւոյ Աստուածութեան հուրը՝ Հօր Աստուածութեան հուրէն ծննդով յառաջ եկած, զատ զատ չեն, այլ մի և նոյն բնութեամբ ։

Իսկ Որդւոյ անօրինակ ծննդեան օրինակ ուրիշ բան չէ, բայց ինչպէս որ մեր մէջը միտքին խօսք ծնանիլը, թէպէտև այս օրինակն ալ ամեն կերպով նոյն ճշմարտութեանը չի համեմատիր ։ Ուստի բան կ'ըսուի, ծնունդը անապական ըլլալուն համար ։ Իսկ Որդի, վասն զի Հօր բնութենէն է, և

անկից ստոր կամ Արիոսի հայհոյութեանը համեմատ արարած չէ ։ Այլ անիմանալին իմանալու հնարը ուրիշ բան չէ, բայց սուրբ Գըրոց մէջ ըսածներուն հաւատալ ու անքննելին չի քննել, որովհետեւ Աստուածային ծընունդը մնաց անհաս և խօսքով անճառ ըսին ։

Նոյնպէս և Հոգին սուրբ բղխումով կ'ըլլայ ՚ի Հօրէ, որդւոյն փառակից, Հօր ու Որդւոյ պէս կատարեալ Աստուած ։

Երեք անձնաւորութեան ալ կամքը մէկ, մէկ զօրութիւն ու մէկ արարչութիւն ։

Հայր՝ երեւելի ու աներեւոյթ արարածները ուզեց ստեղծել, Որդին՝ ոչինչէն գոյացուց, և Հոգին սուրբ՝ իմաստութեամբ զարդարեց ։

Այս նոյն ինքը Աստուծոյ բանը՝ որ զմարդկայ պատկերը ստեղծեց և յանձնաւորութենէն եռև երեւեցաւ անոր և ազգի ամեն արդարներուն ալ Նոյի, Աբրահամու, Իսահակայ, Յակոբայ, Յօբայ, Մովսէսի, Ահարոնի և Յեսուայ, և այլ Մարգարէներուն, և խօսեցաւ անոնց հետ, վերջի ատենները Գաբրիէլ Հրեշտակապետին աւետեօքը Մարիամ սուրբ Կոյսին յորովայնը իջաւ, և անոր բնութենէն մարմին, հոգի, միտք առ-

նելով նոր ու անճառելի միաւորութեամբ իւր Աստուածութեանը հետ խառնեց . ու մանուկի պէս որովայնին մէջը ինը ամիս մեծ-նալով , ծնաւ կատարեալ մարդ ու Աստ-ուած , անշփոթ էութեամբ , ու անբաժա-նելի միաւորութեամբ . մէկ Քրիստոս ու մէկ անձնաւորութիւն երկու միացեալ բնու-թենէ :

Մարդու պէս կաթով սնունդ առաւ , ու հրեշտակներէն որպէս զԱստուած փառա-ւորեցաւ :

Մանկան կատարիչը երեսուն տարի աշ-խարհիս մէջ պտըտեցաւ , մինչև որ մարդ-կութեան հասակը լեցաւ , իւր ծառայէն որպէս մարդ մկրտեցաւ . և 'ի Հօրէ ու սուրբ Հոգիէն վկայեցաւ՝ որպէս Որդի Բարձ-րելոյն :

Մարդու պէս սատանայէն փորձուեցաւ, և իբրև զԱստուած փորձողին յաղթեց :

Անօթեցաւ , ծարաւեցաւ , քնացաւ , լա-ցաւ , հոգնեցաւ որպէս մարդ մարմնոյ օրի-նաց տակը մտնելով , սքանչելիքներ ու նը-շաններ կատարեց , և Աստուածային զօրու-թիւններ ցուցուց՝ որպէս կատարեալ Աստ-ուած :

Կամաւորաբար չարչարուելու եկաւ , ան-

չարչարուելէն՝ խաչին վրայ չարչարելի բնու-
թեամբս չարչարուեցաւ, մահու պարտական
չեղողը մեռաւ մահկանացու մարմնովս, մեզ
մեռեալ բնութիւնս կենդանացնելու համար.
գերեզմանը իջաւ, Աստուածութեան հետ
միացած մարդկային հոգւովը կրկին դժոխ-
քէն աւար ըրաւ, դժոխքը եղող հոգւոց
ազատութիւն շնորհելով։ Իսկ իւր Աստուա-
ծային մարմնոյն յարութեամբը՝ մահու ա-
պականութենէն յարութիւն առնելու մահ-
կանացու բնութեանս յոյս տալով. երրորդ
օրը իշխանաբար մեռելներէն յարեաւ, և
իւր երկոտասան և եօթանասուն, և հինգ
հարիւր աշակերտացը և ուրիշ շատերուն
երևեցաւ; որոնք աշխարհիս վրայ անոր վը-
կայներն ու քարոզներն եղան, և քառա-
սուն օր անոնց տեսնուելով հետերնին կը
խօսէր։

Քառասուն օրը լրանալէն ետև երկինք
ելաւ, և վերը հօր աջ կողմը նստաւ մեր բը-
նութեամբը, ուրկէ անբաժանելի էր Աս-
տուածութեամբը, ու իր ու հօրը Աստուածու-
թեան փառօքը, նոյն մարմնովը պիտի գայ,
աշխարհս արդարութեամբ դատելու, բա-
րեգործներուն բարեաց ժառանգութիւն, ու
անվախճան թագաւորութիւն տալով. իսկ

չարագործաց յաւիտենից ամօթը ու իրենց գործոցը համեմատ տանջանք ։

Այս արդ ճշմարիտ հաւատոյ այս դաւանութիւնը՝ մեր մէջը եղած Աստուածային տաճարին հիմն է ։ Իսկ բարի գործքերը այս հիման վըրայ շինուածն է · ինչպէս Քրիստոս՝ Պետրոսի դաւանութիւնը իբրև վէմ իր իմանալի եկեղեցւոյն հիմն դրաւ , ինքզինքը որպէս շինող · և իր ամեն ազգերէ ժողովուած ընտրելոց բարեգործութիւնները՝ իբրև շինուածոց նիւթ , քարի , փայտի ու ուրիշ պիտոյից տեղ դրաւ ։

Դարձեալ անկից է իբր ճարտարապետ ու մենք իբր հրամանակատար մշակ ։ Ըստ որում իւր աշակերտացը ըսաւ թէ առանց ինձի բան մը չէք կրնար ընել ։ Պօղոսն ալ կը գրէ թէ , ես Աստուծոյ իմաստութիւնը , որ է Քրիստոս , ու անոր վըրայ եղած ճըշմարիտ հաւատքը հիմն դրի , բայց շինողը ուրիշ է · այսինքն որ Այն և որ աշխարհ պիտի գայ ։

Ու շինելը՝ գործքով կ՚ըլլայ · ինչպէս որ ամեն մարդ կը կամի · թէ բարի ու թէ չար ։ Եթէ կ՚ըսէ մէկը այս հիմանը վըրայ շինէ ոսկի , այս . արդարութիւն ու ճշմարտութիւն է , արծաթ՝ որ մտաց մաքրութիւն ու սրտի

անեծքով ու դառնութեամբ լեցուն է ։ Նաև ստութիւնը, չարախօսութիւնը ու մատնութիւնը և ուրիշ անիրաւութեան խօսքեր ալ որ ասոնց կը վերաբերին եղերգին օրինակն են ։

Ու այս երկու հակառակ շինուածքներուն նիւթերը թէ՛ պատուական ու թէ՛ անարգ, հուրը պիտի ընտրէ, կ'ըսէ, ինչու որ հըրով պիտի յայտնուի դատաւորը ։ Ու թէ հաւատոյն հիմանը վրայ շինած գործը, ոսկի ու արծաթ, և պատուական ակունքներ են, որոնք չեն ապականիր · այլ կը սրբուին ալ կրակէն, գործողը կ'ապրի ու վարձք կ'առնէ ։ Իսկ թէ որ՝ խոտ, եղեգ ու փայտ է, որոնք կրակէն դիւրաւ կ'ապականին, գործողը վնաս կը քաշէ ։ Վասն զի ինչպէս մարդոց տուն ըլլալու համար ապարանքին միայն հիմունքը հերիք չէ · հապա պատ ու տանիք, և ուրիշ շինուածք ալ պէտք է · անանկ ալ միայն հաւատքով, առանց գործքի չի կրնար մէկը զինքը Աստուծոյ տաճար շինել ։

Ու ինչպէս որ գլուխը՝ առանց անձին յարմարութեանը չի կրնար կենդանութիւն կրել, և ոչ մարմինն ալ առանց գլխոյ, նոյնպէս ալ հաւատք՝ առանց գործոց, գործք առանց հաւատոյ, երկուքն ալ մեռած են

Առաքելոյն ըսածին համեմատ ։

Աւստի կ՚աղաչեմ ամենքնուդ, որ աւ-ւազանին ծննդենէն ընդունած ու հաւ-տատութեամբ ունեցած ճշմարիտ հաւատք-ներնուդ հետ, արդարութեան գործքերն ալ յարմարեցէ՛ք, որպէս զի մէկ աչքով միայն անձերնիդ չի լուսաւորէք, այլ երկուքովն ալ պայծառանաք ։ Եւ անմիտներուն սնոտի յոյսին մի՛ հաւատաք. որոնք կ՚ըսեն թէ՝ Քրիստոնէին միայն հաւատոյն ճշմարտութիւնը բաւական է զանի տանջանքներէն փրկելու ու արքայութեան արժանացընելու ։ Ինչու որ ինչպէս մեռեալ անդամը՝ մարմնոյն գործքին պիտանացու չէ՛, նոյնպէս ալ մեռած հաւատքը՝ հոգւոյն զօրութիւն մը չի տար. այլ մանաւանդ առաւել տանջանքներու պարտական կ՚ընէ զանի ։ Ինչպէս այն՝ որ մէկ տաղանդը պահեց, ու ընկերներուն նման չի շահեցաւ. ինչու որ տաղանդը հաւատքն է, ու տաղանդներուն շահը գործքն է ։

Հաւատ առանց գործոց ինչո՛ւ մեռեալ կ՚ըսուի նէ, չգիտցողներուն յայտնենք ։

Հաւատոյն անունը մէկ է, բայց կրկին զօրութիւն ունի ։ Առաջինը դաւանութեան հաւատքն է, որ սուրբ Երրորդութեան խոստովանութիւնն է, զորն որ ամեն մարդ-

աւագանէն ընդունեց։ Երկրորդ հաւատքը այն է որ, Մարգարէից, Առաքելոց ու եկեղեցւոյ Վարդապետաց բերնովը Հոգւոյն սրբոյ խօսած խօսքերը, զորոնք սուրբ Գրոց մէջ գրեցին, աւանդել ու սուտ չի համարիր, այլ կը հաւատայ թէ ճշմարիտ ու ուղիղ են, որպէս թէ իւր աչքովը կը տեսնէ ամեն եղածները, ըլլալիքները ու ինչ որ հիմա է նէ։ Երրորդը այն է որ կը պատմեն թէ ամեն երեւելի ու աներեւոյթ բնութիւնները չի կային, ու Աստուծոյ հրամանէն ստեղծուեցան, և ինչ որ արարածոց ստեղծուելէն ետքը, Աստուծմէ եղած սքանչելիքներ ու զօրութիւններ կը պատմուին Հին ու Նոր Գրոց մէջ։ Այս ըլլալիքները այն է, որ կ'ըսեն թէ բարեգործներուն Աստուծմէ բարի հատուցումն պիտի ըլլայ, և չարագործներուն տանջանք ու յաւիտենական հուր։ Այս ինչ որ է նէ ալ այն է, որ իրենց ամեն խօսքին մէջը կը քարոզեն թէ, Աստուած ամենուն մօտ է, և ոչ հեռաւոր, և մարդիկ իրենց մտքին մէջը ինչ որ կը խորհին նէ, թէ՛ բարի ու թէ՛ չար, ամենը կ'իմանայ. և ինչ որ լեզուով կը խօսին նէ՝ անսխալ կը լսէ, և ինչ որ մարմնով կը գործեն նէ գաղտուկ՝ յայտնապէս կը տեսնայ. վասն

զի արարած մը չի կայ անկէ աներևոյթ ։

Արդ կենդանի հաւատք ունեցողն է այն՝ որ ասոնց 'ի բոլոր սրտէ կը հաւատայ, որն որ երբէք չի յանդգնիր իւր սրտին մէջ չարութիւն խորհիլ կամ բերնով անիրաւութիւն խօսիլ, կամ իւր անձամբը մեղք գործել ։ Թէ որ մէկուն մօտ եղած ժամանակը մարդիկ անարժան գործ գործել չեն կրնար նէ, երբոր մէկը զԱստուած տեսող կը հաւատայ, ի՞նչպէս կը յանդգնի կամակոր մտօք չարութիւն խօսելու կամ գործելու ։ Իսկ այն մարդը՝ որ առ Աստուած խոստովանութիւնը միայն խօսքով ունի, և ո՛չ թէ գործքով, այն մարդուն հաւատքը մեռեալ կ'ըսուի ։

Եւ արդ՝ վասն զի սուրբ Աթոռիս ըսպասաւորութեան ձեռօքը մեզի տրուած տնտեսական գործոց բազմատեսակ անուանցը հետ, բժշկական անուն մը ու գործ մըն ալ կայ ։ Վասն որոյ՝ ինչպէս որ բըժիշկը հիւանդին ախտարար ցաւերուն պատճառը ճանչնալով՝ կը հրամայէ որ վնասակարներէն հեռու կենայ ու առողջարար դեղ ու կերակուր ընդունէ. նոյնպէս ալ մենք, Քրիստոսի ընդհանրական եկեղեցւոյ հոգևոր բժշկութեան հոգը ունենալով, կը

տեսնամք մտաց աչօք, թէև ամենը չէ, այլ
աշխարհիս շատ մասը, որ մեռելոտի գործ-
քերնուն համար, հաւատքնին ալ մեռած
է ։ Այս կ'ուզեմք որ բժիշկներուն պէս ա-
մենուն սորվեցընեմք, իրենց մահաբեր ախ-
տերնուն պատճառները, ու հոգիներին կեն-
դանացընելու դեղերը, զորն որ եթէ առանց
դժկամակելու առնէք ու խմէք, և ձեր հո-
գիէն խոստովանութեամբ և ապաշխարու-
թեամբ մաղձից ապականութեան դառնու-
թիւնը մաքրէք, Աստուծոյ ողորմութեանը
ու անոր խոստացած բարութեանցը արժանի
կ'ըլլաք ․ բայց որո՛ւ որ մեր ըսած խօսքերը
ախորժելի չի թուին, կամ ծուլութեան և
մեղսասիրութեան և կամ մեզի արհամար-
հելնուն համար ․ այնպիսիներուն մարգա-
րէական խօսքը կ'ըսեմք թէ, ո՛վ որ պիտի
անօրէնութիւն գործէ նէ, թո՛ղ գործէ,
ու ո՛վ որ արդարութիւն պիտի գործէ նէ,
թո՛ղ գործէ ։ Մենք մեզի հրամայուածը ը-
նենք, Աստուծոյ պատուիրանքները, որ-
պէս դէտ բարձր տեղէն ձեր ականջին պօ-
ռալով, ասկէ ետև ընելը ու չընելը ամեն
մէկուն ազատ կամացը ձգած է ։

Բայց ձենէ մէկը չի կարծէ թէ, մենք
ինքզինքնիս մեղաց ախտերէն առողջ համա-

բերլով, ձեզի միայն այս բժշկական դեղերը կուտամք ինչպէս հիւանդներուն. այլ գիտնայ ամեն մարդ որ ամենէն աւելի հոգւոյ բժշկութեան մենք կարօտ եմք : Բայց ինչպէս հիւանդ բժիշկ մը իրեն տուած իր առողջութեան դեղը՝ անոր մարմնոյն ցաւերը տեսնելով, չընդունիլը յիմար հիւանդի է, նոյնպէս իմաստուն մարդն է որ բժշկին ընութիւնը հոգ չըներ թէ առո՞ղջ է կամ հիւանդ, այլ դեղին օգտակարութիւնը կը քննէ թէ, առողջարա՞ր է թէ վնասակար :

Արդ դուք ալ չըլլայ որ մեր անարժանութեանը ու. հոգևոր բաներու մէջ ունեցած պակասութիւններնուս համար, ձեզի տուած հոգւոց օգտակար դեղերը արհամարհէք ու չընդունիք : Կ'աղաչեմք, սիրով ու յօժարութեամբ ընդունեցէք, չէ թէ մեր փառաց ու պատուոյն համար, զորն որ մէկէ մը չենք ուզեր, թէ և արժանաւոր ալ եղած ըլլայինք, այլ Քրիստոսի սիրոյն համար որ մեզի իւր արքայութեանը ու փառացը կոչեց :

Ո՛վ թէպէտև մենք անարժան ենք, այլ այս խօսքերը որովհետև Աստուածային է, ընդունելութեան արժանաւոր է. և ընդունելն ալ ուրիշ բան չէ, բայց գործոց կատարումը :

Ուստի աղօթեմք իրարու համար, մենք ձեզի համար, որպէս գլուխ անձին համար, որ ձեր սրտին մէջը Աստուածային խօսքերնուս սերմերը սիրով ընդունիք, ու Աստուծոյ պտուղ տաք, բարի ու պարարտ երկրին երեք պտղաբերութիւններուն մէկուն պէս : Նոյն դուք՝ ալ մեզի համար աղօթեցէք, ինչպէս անձը գլխուն համար, որ հոգեւոր հիւանդութիւններէն բժշկուինք, ու զգայութեանց տկարութիւններէս զօրանանք, որպէս զի թէ որ մեր աչքը կուրցընող գերան կայ նէ մեր վրայ, նախ անիկայ հանենք, որպէս զի ուրիշներուն աչքին շիւղը տեսնելու ու սրբելու կարող ըլլամք : Բանալ գոցուած ականջը Աստուածային ձայնին Ճանապարհ բանալով, ու հոտոտելիքները անմահութեան թափուած իւղին անուամբը անուշացընելու, ու Ճաշակելիքները կենաց հացին քաղցելու ու ծարաւելու, և արդարութեան ու իմաստութեան կերակուրովը անյագութեամբ կշտանալու, և լեզուները, որ Աստուծոյ փառացը և Աստուծոյ խօսքը լսողներուն շինութեանը համար է, սպասաւոր ըլլալ Աստուծոյ հրամանին համեմատ աղ ըլլալով գէշ հոտ ունեցողներուն ու լոյս՝ խաւարեալներուն նախ մեր

անձին ու հոգքը ուրիշին ։ ...

Որով և երկուքն ալ ձեր լողացող առաջեւ կը գտնեմք զանազան կերպով, հագուով պայծառացեալներուն Աստուածային բանից լուսափայլ ճառագայթը, ու մութը մնացողներուն և գէշ հոտ ունեցողներուն, աղին նման կսկիծ տուող ցաւը, այս կերպով կ'սկըսինք հիմա, որու որ արժան է նէ մեր խօսքը գրելու ։

Վասնէք մեզ նեցող նշմարտութններուն։

Եւ արդ՝ էն առաջ վարքով ու քաղաքավարութեամբ աշխարհէ վեր եղողներնուդ խօսինք, այսինքն ձեզի որ վանքի ու մենաստաններու մէջ կը բնակիք ։ Դուք որ ձեր աղօթքովը ու ձեր բարի վարքովնիդ թշնամեաց դէմ պարիսպ ու պատն էք աշխարհի, մարմնով հրեշտակ և աշխարհի լուսաւոր աստղեր էք․ որ ձեր բարի ու լուսաւոր վարքովը ձեր երկնաւոր Հայրը

միշտ կը փառաւորուի ։ Որ թէպէտ միշտ ձեր ականջը խօսուած Աստուածաշունչ գրը-քերէն խրատուած էք , և կարօտ չէք՝ իմ քիչ խօսքերուս , հապա ինչպէս որ ծառայ-ները հասարակաց կերակուրը իրենց տիրոջ-մէն հրաման ունին բաշխելու՝ չէ թէ միայն անօթիներուն , այլ նաև կուշտ եղողներուն անգամ կը շնորհեն ։ Անանկ ալ մենք որ մեր բոլոր ծառայակիցներուն Աստուծմէ հրաման ունինք բանին կերակուրը տալու , հասարա-կաբար պարտաւոր ենք տալ գիտութեամբ հարուստ եղողներուն , գիտութենէ աղքատ-ներուն , առաքինութեամբ զօրաւորներուն , և առաքինութենէ տկար եղողներուն ։

Անոր համար՝ ամէննուդ ալ կ՚աղաչեմ ձեր հաւատքնուդ լապտերներուն լոյսը սըր-բութեան և ողորմութեան իւղին սակաւու-թեամբը չի խաւարեցընէք , հապա միշտ վառուած առաքինութեամբ Աստուածու-թեան ճառագայթները անշիջանելի պահե-ցէք ձեր վրայ ։ Քրիստոսի սիրոյն կրակը որ աշխարհիս մէջ ձգեց և կ՚ուզէ շուտով բորբոքիլը , նիւթական բաներուն սէրովը , մի՛ մարէք ձեր հոգւոյն մէջը ։

Ձեր սրտին մէջ ցանկութեան օտար կը-րակը մի՛ ընդունիք , և անանկով Աստուա-

ծայրին պատարագին խորհուրդը և աղօթքը մի մատուցանէք, ինտոր որ Ահարօնի որդիքը Նաբադն և Աբիուդը. հապա էն առաջ անմաքուր խորհուրդներէն ու գործերէն ամեն մէկը խոստովանութեամբ մաքրուի, և առաքինութեամբ ինքզինքը կենդանի Աստուծոյ կենդանի պատարագ մատուցանէ, ու ետքը այն մաքուրին մերձենայ և Սրբոց Սրբութեան սպասաւորութիւն ընէ, որ չըլլայ թէ անոնց պէս այն տանջողական կրակովը հոգին էլուրի՝ հոս խըղճմըտանքով, և անդին անշիջանելի բոցով:

Չըլլայ որ ձենէ մէկը Գողտայ կնոջը պէս աղի արձան ըլլայ աշխարհական բաներուն, այսինքն ախտից հեշտութեան կամ նիւթական բաներու ետ դառնալուն համար:

Քանզի՝ ինչպէս որ անիկայ այս պատուհասէն ետքը աղի պէս կերակուրներուն համ տուող չեղաւ. վասն զի քար էր. և քարի պէս շինուածքի մը պիտանացու չեղաւ, վասն զի աղ էր: Այսպէս ամեն մարդ որ աշխարհէս կ՚ելլէ Գողտայ Սոդոմէն ելլելուն պէս և կրօնաւորութեան կարգը կը մտնայ՝ որ հրեշտակական կարգ մըն է. ինտոր որ անոնք հրեշտակներու հետ լեռը գացին, և կրկին աշխարհիս սիրոյն կը դառնայ և մեղաց

գաղջութեան մէջ կը թաւալի , այն կնկանը պէս՝ որ երեսով Սոդոմ կը դառնար , այնպիսին Աստուծոյ պիտանացու չէ կրօնաւորի պէս, և ոչ ալ աշխարհի օրէնքներուն · աշխարհականի մը պէս · հապա անարգ է և անպիտան , համ չի տուող աղի մը պէս մարդիկներէն կոխուած , բայց դուք որ Աստուածային կարգիդ մէջ անփոփոխ էք , ձեր ամէն բանը Առաքելոյն խրատին համեմատ պարկեշտութեամբ և ըստ կարգի ըլլայ ։ Որ նաև դարձեալ կ՚ըսէ՝ իմաստութեամբ վարուեցէք դուրսիններուն հետ ժամանակը ծախու առնելով · և թէ՝ ձեր վարքը հեթանոսներուն առջին պարկեշտ ունեցէք ։

Նաև արդ՝ չըլլայ որ ձենէ մէկը լեզուագէշ խօսելով կամ անոնց առջևը անձամբ անպատշաճ բաներ ընելով՝ անոնց անդուռն բերաններին սուրբ հաւատքներնուս և կարգերնուս հայհոյութեան բանալու պատճառ ըլլայ · որով Աստուծոյ առջին կրկին համար պիտի տան անանկները , էն առաջ մեղքերնուն համար որ կը խօսին կամ կը գործեն · երկրորդ և էն մեծ յանցանք գայթակղութեան պատճառ ըլլալնուն համար ։

Չըլլայ որ ձենէ մէկը իւր կրօնաւորներուն ընկերութիւնը թողլով առանձին բնա-

կլի , Ճգնողական վարժուց համար չէ՝ Միայնակեացներուն պէս , հապա ագահութեան ախտին համար , որ իւր անձին աշխատութիւնը՝ հասարակաց եկեղեցիին չի տայ , հապա իրեն համար միայն պահէ , ուրկէ հոգւոց շատ վնաս կ'ըլլայ , և միաբան ըլլալէն՝ շատ օգուտ կ'ըլլայ · ինչպէս որ Աստուածախօս Վարդապետներուն խօսքերը կը ցուցընեն : Վասն զի շատերուն Աստուծոյ երկիւղէն աւելի օգուտ կ'ընէ ընկերներէն ամչնալու երկիւղը մեղք գործելէն սրտին փափաքը ետ դարձընելով · այլև շատ օգուտներ կան եղբայրները մէկ տեղ բնակելէն , զորն որ գիտցողներնուդ նորէն զրուցել աւելի կը սեպենք :

Ան անանկ աշխարհասէր ու Թոյլ կըրօնաւորներ ալ , որ չէ թէ միայն սրտով հին Իսրայելին նման կը դառնան Եգիպտացւոց խաւարին գործերուն , այլ և անձամբ ալ աշխարհականներու հետ կը բնակին , գեղերը ու քաղաքները ու բերանով դարշելի խօսքեր խօսելու ու գէշ գործեր գործելու , և անպարկեշտ պողազավերութեան և անառակ արբեցութեան և ամեն անկարգ գործերու մէջ աշխարհականներէն անցած են , կը վայլէր որ թէ որ կրօնա-

ւոր մը հարկաւոր բանի մը համար քաղա-
քին մէջը բնակելու ըլլար , Աստուածային
ու ուղիղ վարքովը անոնց մէջ լոյս տուող
ըլլալ , աշխարհի մէջ Աստուծոյ անունը
փառաւորը , և ոչ թէ հայհոյութեան պատ-
ճառ ըլլար :

Անանկները կը յորդորենք աւելի քա-
ղաքը բնակելու , չէ թէ կ'արգիլենք , վասն
զի բարի օրինակով շատերը բարի կ'ըլլան .
ինչպէս որ վարքով չարերուն նմանելով
շատերը չար կ'ըլլան :

Հիմա Աստուծոյ և մեր Հրամանաւը այս
ըլլայ անանկներուն վրայ կանոնական օրէնք ,
այսուհետև իրենց բնակութիւնը վանքի մէջ
փոխել , իրենց վարքը կարգին ու կերպա-
րանքին համեմատ առաջնորդութեան ու
պարկեշտութեան փոխէ մինչև 'ի վախճան .
Իսկ թէ որ գրած Աստուածային օրէնքներ-
րուս անանցմէ մէկը մտիկ չընէ , և աշխար-
հէն չելլէ , հապա կամակորութեամբ մինչև
'ի մահ հոն մնայ , մենք անոր կորստեան
խիղճէն անպարտ ենք , ինքը թող ըլլայ
Աստուծոյ առջև իր արեանը պարտական ,

Ամէն քահանաներուն պատուէր կուտանք
որ թէ անանկը քանի որ աշխարհի մէջ է ,
ու մարմնոյն վախճանը հոգւոյն մեռներուն

նաւկը վանքերու մէջ նոր եղած սովորութեան մը համար, կրօնաւորներուն բոլորն ալ այգեգործ ըլլալով գիւղերու մէջ եղածի պէս, որ չի վայլեր կրօնաւորական կարգի մը և առաջին սուրբ Հարց պատուիրաններէն ալ դուրս է։ Վասն զի անոնք՝ աշխարհի մէջի ունեցած ժառանգութիւննին ու ստացուածքնին թողուցին, ու թողելու պատուիրեցին, և առաքինութեան խաչը առին, ու Քրիստոսի ետևէն գացին, ինչպէս որ ինքն ալ մեծատան կը հրամայէր, թէ՝ գնա ծախէ ինչ ունիս նէ ու աղքատաներուն տուր, ու դուն ալ քու խաչդ առ ու ետևէս եկու, որ երկնից մէջ շատ գանձ ունենաս։ Ու դարձեալ կ'ըսէ թէ՝ ով որ կ'ուզէ իմ ետևէս գալ ու աշխարհքին ունեցած ամեն բանը չուրանայ ու իւր խաչը չառնէ չի կրնար իմ աշակերտս ըլլալ։ Ու ուրիշ այսպիսի աւետարանական պատուիրաններ կան աշակերտ եղողներուն ինչպէս որ դուք էք։ Ու շատ կայ ժամանակիս կրօնաւորներէն՝ որ աշխարհիս մէջ առանց ժառանգութեան էին, ու իշխաններու հարկ կուտային, ու հարստութիւն չունէին, ու հարկաւոր բաներու կարօտ էին․ ու երբոր կրօնաւորութեան կերպարանքը առին՝ շատ

ժառանգութիւններու տէր եղան վանքերու մէջ, ու ստացուածքով հարուստացան, ու չէ թէ միայն հարկաւոր բաներուն անկարօտ եղան, հապա աւել բաներով ալ լեցուեցան, ու աշխարհիս մէջ հոգերով ցաւերով տառապեալ էին. ու հոս անհոգութեամբ ու հանգստութեամբ գիրցած են։ Ու ինչպէս կրնայ անանկը աշակերտութեան կարգին մէջը ըլլալ, ու Պետրոսի հետ ըսել. Տէր ահա մենք թողուցինք ամեն բանը ու քու ետեւէդ եկանք, հիմա ինչ պիտի ըլլայ մեզի։ Յայտնի է որ Քրիստոսի համար բան մը չէ թողուց, հապա ինչ որ աշխարհին մէջը չունէր Քրիստոսի հակառակ վաստըկեցաւ։

Այս արդ՝ քանզի Աստուածային պատուիրանքները ընդունողներուն կարողութեանը համեմատ տրուեցաւ ամեն ատեն, խիստ ակարներուն շատ թեթեւ որ կարող ըլլան առաջ տանելու, ու զօրաւորներուն ծանր, ինչու որ յօժարութեամբ կը տանին։ Ասանկ ալ մենք, վասն զի շատերը կը տեսնենք Աստուածային սիրոյն պաղած, ու մէկըղմէկէ աւելի բարի նախանձով բարձր առաքինութիւններու ձեռք չեն զարներ, ինչպէս առաջին հայրերը, այլ մեր ժամանա-

շատ ողկոյզ արեւէն էրուեցան ու չորցան ․ ու ոմանք ալ փտտելով աւրուեցան ․ Եւ թէ ի՞նչ ընեմ, եղած վտանգին ճարը չգիտեմ ։ Ու ընկերը կը յորդորէ անիկայ ու խրատ կուտայ անկերէն ոմանք պատուաստելու, որոնք որ պտուղնին կը կորսնցընեն, ու ուրիշներն ալ կերպ կերպ փորձուած հնարքներով պատահած բաներէն ազէկցընելու ։

Ու քանզի Նիւթական բաներու ցանկութեանը մէջ բռնուած կը տեսնենք ժամանակիս կրօնաւորներէն շատերը, որոնք ասանկ հոգերու ծանրութենէն թեթեւնալը ; ու Քրիստոսի խրատուն ետեւէն երթալը դժուար կը համարին, ու կը հրամայէ հարկաւոր կերակրոց համար հոգ չունենալ, չըսենք աւելորդներուն համար, անոր համար մենք ալ օրէնք չենք դներ ասանկ կըրօնաւորներուն տնկագործութենէն ու ինչք ստանալէն բոլորովին մէկդի կենալ, ինչպէս որ Քրիստոսի աշակերտներուն կը վայլէ նէ, որ չըլլայ թէ լսելու ատեննին իրենց երեսնին արեւմուտք դարձընեն, ու մեր խրատական խօսքերուն խաժոռելով մէկդի երթան այն մեծատանը պէս ։ Հապա երկրորդ գտնալով որ Աստուծոյ կամացը հաճոյ գիտենք, անիկայ ձեռքի օրէնք դնենք ։

Ու դուք թէև առջինին վրայ կը դժուարիք ամէն ունեցածնիդ Աստուծոյ տալ, և կամաւ աշխարհի մէրկ մնալը գերեզմանին մէջ ակամայ մերկ դրուելէն առաջ. երկրորդը ախորժելի կամաւ ընդունեցէք, զորն որ թէ որ յօժարական սրտիւ 'ի գործ դընէք Աստուծոյ ողորմութեանը կը հաւտանք, որ առջինին պէս կ'ընդունի, ու երկրորդը կատարելով առաջինն ալ յօժար սրտիւ ու չէ թէ բռնութեամբ կատարելու դուռ կը բանայ ձեզի ու աս է որ պիտի ըսեմք :

Ամէն բանէն ինչ որ կ'ունենաք թէ' տունկ ըլլայ և թէ' ուրիշ բան ագահութեան ախտը անոնց վրայէն մէկդի թողէք, բարի սերմերուն մէջէն փշասակար բոյսի մը պէս, ու ձեր անոնց վրայ ունեցած աշխատութիւնը շատ բան ժողվելու համար մի ընէք, հապա Աստուծոյ կամացը համար, ու երկրաւոր բաները երկինքը գանձելու, ու ձեր մարմնոյն պատասխանատուութենէն ձեր հոգւոյն գանձ ամբարելու համար :

Այս ըսածնիս տանկ ըլլայ, որով ձեր ստացուածքները Աստուծոյ հաճոյ ըլլան :

Պտուղներուն ժամանակը ձեր պտուղներուն մէկ մասը Աստուծոյ տուէք աղքատներուն ու կարօտեալներուն տալով, ու

պտուղք ուղողները ունայն մի դարձընէք ; որ չըլլայ թէ Աստուած ալ իր անկած դըրախտէն ձեզ դատարկ հանէ ։

Ու թէ որ տաք նէ խոժոռ դէմքով զայրացեալ սրտով ու ծանր խօսքերով չի տաք Կայենի զոհին պէս , որ հաճոյ չէ Աստուծոյ , հապա բարկութեան պատճառ ալ ․ այլ զուարթ սրտիւ , ինչպէս որ Աստուած կը սիրէ ու կ'ուզէ ։

Ու գինիին ժամանակը այն գինիէն Աստուծոյ բաժին հանեցէք , ու թէ որ ձեզի պիտոյ եղածներէն աւելի ըլլայ ու ծախել հարկ ըլլայ այն տակին գինէն Քրիստոսի աւելի պտուղ տուէք , գերիներուն ու տառապեալներուն տալով , ու չըլլայ որ երկրի մէջ պահէք , ու մահէն ետքը յոյս ունենաք ուրիշներուն ձեռքովը ձեզի համար ձերինը Աստուծոյ տալ ։

Վասն զի պզտիկ բան մըն է այն յոյսը ․ չըսեմ բոլորովին պարապ , ընական բարի է , չէ թէ առաջին , ուրիշներուն ձեռքովը իւր ստացուածքին աւելի առատ ըլլալու յուսալ , և իրեն ձեռքը կապել , երբոր իւր ունեցածին տէրն ու իշխողն է ։ Ու երկբայելի է անանկ մարդ մը գտնել որ այն ինչքը Աստուծոյ երկիւղովը բաժնէ ․ մեռ-

Նորէն Հրամանքին Համեմատ ։ Վասն զի շատ աներկիւղներուն Հոգւոյն կորստեանը պատճառ կ'ըլլայ մեռնողին ինչքը , երբոր ժառանգութիւնը անառակ վարքով կը վատնէ , իւր ստացողին փրկութեան տեղը մեղաց պատճառ կ'ըլլայ այն ինչքերը ։

Դա՛րձեալ թէ որ երկիւղած մէկ մը ըլլայ , ու ամեն ինչքերը Աստուծոյ կամացը Համեմատ անօրինէ մեռնողին մեղացը թողութեանը Համար , քիչ բարի է , ու չէ թէ կատարեալ բարի ։ Ասոր ալ ճշմարիտ ըլլալը իմաստնոյն խօսքերէն կը սորվինք . որովհետև կ'ըսէ ով որ աղքատին ողորմութիւն կուտայ Աստուծոյ փոխ կուտայ ։ Ասիկայ ամեն մարդ գիտէ որ տրուածին վըճարքը օտարի չի տրուիր , Հապա փոխառուն փոխ տուողին կուտայ ։

Անոր Համար կ'աղաչեմ չըլլայ որ ուրիշ մէկուն վրայ վստահութիւն ունենաք , Հապա դուք ձեր ձեռքովը փոխը Աստուծոյ ձեռքը տուէք ։ Վասն զի թէ որ փոխը ուզող Աստուածը ձեզի փոխատու ճանչնայ նէ Հատուցանելու դրած օրն ալ ձեր ձեռքը կը վճարէ փոխը ։

Իսկ թէ որ ձեր ունեցածը ուրիշ մէկը փոխ տայ՝ անիկայ կ'առնէ փոխարէնը Ա-

տուած , ու ձեզի գուցէ ողորմութեան մասն մը տայու , ձերին ինչքը բաժնելին միջնորդութեամբը :

Այլ և Քրիստոսի հրամանը որ ընդհանուր առաքեալներին մէջ աշակերտներուն դասուն պիտի ըսէ , այս կը նշանակէ : Քանզի չըսեր որ անօթեցայ , ու ուրիշները ձեզի համար ինծի ուտելիք տուին , կամ թէ մերկ էի , ու ուրիշները ձեզի համար զիս հագուեցուցին , հապա դուք ինծի ուտելիք տուիք , ու դուք զիս հագուեցուցիք :

Նոյն օրդ՝ թէպէտ Քրիստոսի առաջին կամքը ու հրամանը այն է որ կրօնաւորները բնաւ ինչք չունենան , ինչպէս որ վերը ըսինք , որ չըլլայ թէ նիւթական բաներու հոգը ունենալովը Աստուածային առաքինութեանց հոգ ունենալէն ետ մնայ , ու շատ վնասներու հոգերու ու ծանրութիւններու տակ ձգէ ինքզինքը . այլ Աստուծոյ հրամանին համեմատ միաբանութենէն կերակուր ու հանդերձ առնէ , ու անով բաւականանայ : Բայց վասն զի ասիկայ ամենուն չէ՝ հապա անոնց որոնք Աստուծոյ սիրոյն համար թողուցին աշխարհը ու ելան աշխարհէն ; ու չէ թէ ուրիշ պատճառի մը համար :

Անոր համար մենք ալ այն կրօնաւոր-

նէրուն որոնք երկակենցաղ կենդանիներու կը նմանին , որոնք ձևով ցամաքային են , ու աշխարհային ծովուն մէջը պտըտելնուն համար ծովային են , աշխարհականներուն օրէնքը գնենք , ու չէ թէ աշխարհէս վեր մարդիկներուն ։ Վասն զի Քրիստոսի համար աղքատանալը մեծ է , Քրիստոսի հրամանին համար ինչք վատըրկել ու աղքատներուն տալէն աւելի որչափ որ Քրիստոս մեծ է՝ ան մարդէն որն որ Քրիստոսի համար աղքատին կ'ողորմի ։

Քանզի Աստուծոյ համար կամաւոր աղքատ եղողը Քրիստոսի նմանող (է) , որն որ մեզի համար աղքատացաւ , ինչպէս որ գըրոց մէջ ըսուեցաւ ․ իսկ աղքատին ողորմողը Քրիստոսի բարեկամ կը կոչուի , չէ թէ նոյն ինքը Քրիստոս ։

Եւ արդ՝ որովհետև Քրիստոսի համար ամեն բաներէն կամովին մերկանալով Քրիստոս ըլլալը ամենուն դժուար է , չըսեմ անհնարին ․ վասն զի որոնք որ կ'ուզեն՝ կրնան , ինչպէս որ ժամանակ ժամանակ շատերուն ըրածէն յայտնի կ'երևայ ։ Դուք որ ինչք ստացեր էք , այսուհետև աղքատներուն ողորմելով Քրիստոսի բարեկամներուն աստիճանը ընդունեցէք ․ ին-

տոր որ ինքն ալ տէրը Հրամայեց. թէ ողորմութիւն տուէք, ու ձեր ամեն բանը սուրբ կ'ըլլայ. այսինքն թէ՝ երբոր ձեր ունեցած ինչքէն մէկ մասը աղքատներուն ողորմութիւն տաք յօժար ու առատ կամօքով; մնացածներուն ամենն ալ կը սրբուին ու ձեզի անվնաս կ'ըլլան: Ու ինչք ստանալնուդ Համար ագաՀի պէս չէք դատուիր. Հապա՝ մեր տիրոջը ըսածին պէս ողորմածներու նման Աստուծոյ ողորմութեանը արժանի կըլլաք, թէ երանի ողորմածներուն, որ անոնք ողորմութիւն պիտի գտնեն:

Նաև աս ալ կ'ըսենք, թէ ան օրէնքը՝ որ կրօնաւորներուն անինչ ու անստացուած ըլլալու Համար դրուեցան, թէպէտ և աշխարՀային բաներուն անզբաղ ըլլալու, ու միայն Հոգևոր բաներու պարապելու Համար է. բայց կատարեալ պատճառը կրօնաւորին կարօտ մնալուն Համար է, չէ թէ միայն աւելորդ կերակուրներէն ու խմելիքներէն ու զգեստներէն, այլ նաև Հարկաւոր բաներէն ալ: Որպէս զի ցանկութեան պատերազմին մէջ, որ իրեն մաքուր կուսութեանը դէմ կը Հակառակի, կարող ըլլայ յաղթելու: Վասն զի ոլոնք որ ինքզինքնին շատ ուտելու ու խմելու կուտան, թէև ի-

րենց կիրքերուն գրգռիչ պոռնկութեան դևերն ալ չըլլային, բաւական էր որ ցանկութեան բոցը որովայնամոլութեամբ շատ նիւթ տալով զանոնք կատարեալ մեղք գործելու մէջ ձգէ։

Անոր համար կ՚աղաչեմ, որ Թէպէտ և ձեռուընիս ու տանը մէջ խմելու ու կերակրոյ պատրաստ նիւթ շատ ունենաք, ձեր հոգին խնայելով ագահութեամբ և որկրամոլութեամբ չի գործածէք, հապա պարկեշտութեամբ և օրինաւոր կերպով ինչպէս որ կրօնաւորներու կարգին համեմատ։ Ու ինչ որ Աստուծոյ պատուիրանին համար ձեռնէ կը կտրէք, այն մասը կարօտեալ և չքաւոր ծեր և տկար եղբայրներուն սիրոյն միշտ գործածեցէք, որով երկու կերպ բարիք ձեր հոգւոյն կը վաստըկցընէք, ձեր անձանց պարկեշտութիւնը, և սիրով՝ կարօտեալներուն ողորմութիւնը։

Ձեր մէջը մէկը չըլլայ որ կրօնաւորութեան կարգը առած է, ու ինքզինքնին շատ գինիի տալով գինովի բամբասանք բերէ սուրբ կարգին։ Որ մէկուն անկարգութեամբը անոր ամեն կարգակիցներն ալ աշխարհականներէն և ուրիշ ազգերէն նախատինք չի լսեն։ Մէկէև ուրիշ ամեն կողմէ

հնար էր որ անոնկը չի բամբասուի , երբ խմելովը արքայութենէն դուրս չելլայ Առաքեալին ըսածին պէս , քանզի կ'ըսէ թէ խաբուէք , ո՛չ սպանողները , ո՛չ շնացողները , ո՛չ արուագէտները , ո՛չ գինովները , և ո՛չ ուրիշները որ ըստ կարգին կը համրէ , Աստուծոյ և Քրիստոսի արքայութիւնը չի ժառանգեր ։

Վասն զի անոնք որ բարեաց օրինակ ըլլալու պարտական են՝ ամեն տեսնողներուն , ու անանկ բան կը գործեն որ սուրբ Գիրքը աշխարհականներէն կ'արգիլէ գործել . աշխարհականին ի՞նչ յոյս կը մնայ . և կամ ո՞վ կը համարձակի անոնց իրենց ըրած գէշ գործերուն համար յանդիմանութեան բան մը խօսիլ ։ Որոնք մէկ քանի կարգաւորներուն զանազան անկարգութիւնները պաշտնիս կը ջանեն ։ Ամենուն համար չենք ըսեր ; վասն զի ձենէ շատերը՝ Աստուծոյ սիրոյն համար հացով և ջրով անգամ չեն կշտանար , թող թէ՝ եւել կերակուրներով ու գինիով ։

Այլ անխրատները ու ծոյլերը , որ կարգէ դուրս կ'ելլեն . դուք որ կատարեալ էք , անոնք խրատեցէք որ ուղղուին ։

Իսկ որոնք որ կամակորութեամբ ծոյլ ու անհոգ կեանք վարել կը ցանկան , շատ

անդամ խրատելէն ու մտիկ չընելէն ետքը՝ այն անբժշկելի անդամները եկեղեցւոյն մարմինէն կտրեցէք , որ չըլլայ թէ պղտի խըմոր մը բոլոր զանգուածը ապականէ . չարը՝ չարութեան օրինակ ըլլալով :

Իսկ թէ որ եղբայրներէն մէկը անանկներուն պաշտպան կենայ մարմնաւոր ըստանութեան կամ սիրոյ համար . որպէս թէ հիւանդ անդամը առողջ անդամներուն կարգը միայն լըրութեամբ անվայել գործ գործելով , և քովիններուն հիւանդութեան պատճառ ըլլալով՝ իր հոգւոյն ախտը անոնց փոխէ , անոր ու ուրիշներուն հոգիին կորըստեանը բորոտութեանը նման , անոր օգնական Քրիստոսի առջևը պատասխան տայ, թէ առաջնորդը ըլլայ և թէ ընկերներէն մէկը : Իման զի թէ որ Քրիստոս կը հըրամայէ աչ աչքը խլել , ու աչ ձեռքը ու ոտքը կտրել ։ Ի՞նչ պիտի ըլլան որոնք որ գայթակղեցուցողները անմեղներուն քովը ամուր կը պահեն , երկուքին ալ հոգւոյն վընաս ըլլալու համար , հիւանդներուն՝ չարութիւնը առանց վախու գործելով , և առողջներուն՝ գայթակղելով ու թամբասելով :

Իսկ թէ որ այնպիսին հեռանալէն ետքը զղջալով ուղիղ վարքի դառնայ Աստուծոյ

շնորհօքը , և ապաշխարութեամբ ողջմնայ չէ թէ ու երեսս , հապա Ճշմարիտ սրտիւ , Նորէն Յ.Քրիստոսի առողջ անդամներուն հետ միաբանութեան մէջ ընդունուի ։

Դարձեալ աս ալ կը պատուիրիմք որ եթէ հնար է նէ դուք փոփոխական բնութիւննիդ ձգէիք վանքէ վանք շրջելով · վասըն զի քիչ մը պատճառի համար իւր առաջնորդը և իւր միաբան եղբայրները թողուլը անհաստատ բնութեան նշան է ։ Վասն զի հոգիին վնասէն զատ որ հրամայած է գրքերու մէջ , մարմնաւոր պատճառի մը համար թողուլ ու երթալը , չեն հրամայեր տեղէ տեղ փոխուիլ ։ Եւ այս պատճառէն մեր ազգին մէջ կրօնաւորներէն շատերը կը տեսնանք չի վարժուած ու չի խրատուած · ու իրենց մեծերնուն անհնազանդ , ու գրեթէ բոլորն ալ , բայց մէկ քանիններէն զատ ։ Վասն զի երբոր կրօնաւորներուն չի վայլած անպատշաճ խօսքի , և կամ գործի մէջ մէկը տեսնայ առաջնորդը կամ վարդապետը և կամ ծերերէն մէկը , ու յանդիմանելով սաստէ, շուտով գիշեր ատեն տիրոջմէն փախած ծառայի մը պէս նեղացած սրտով կը փախչի այն Աստուածային խրատ տուողին քովէն ։

Այս որովհետև առաջնորդը կը վախնայ որ չըլլայ թէ եղբայրները սաստիկ պատճառով գացած առեննին եկեղեցիին գործին պակասութիւն ըլլայ, կը ներէ ամեն անկարգ եղբօրը որ անկարգ գործի ու բարքի մէջ անբժշկելի կը մնայ, ու ասոր համար անխրատ ու անկիրթ կը մնան այնպիսիները մինչև 'ի վախճան ։

Նաև աւելի մեծ յիմարութեան խօսք մ'ալ կայ որ շատ չի պտըտելու համար խըրատ տուողներուն կ'ըսեն, Աստուած մեզի ազատ ու անձնիշխան ըրաւ, ինտո՞ր մեր ազատութիւնը մարդկան ծառայութեան տակ դնենք ։ Ու երանի՛ որ այս ազատութիւնը, որն որ Աստուած մեզի տուաւ 'ի բարին գործածէին, այսինքն մեղքէ ազատ ըլլալու ։

Գէշ ու վնասակար ծառայութիւնը մեղաց ծառայութիւնն է, ինտոր որ Քրիստոս ըսաւ, ով որ մեղք կը գործէ, մեղաց ծառայ է ։ Այս Աստուծոյ՝ ու Աստուծոյ համար եկեղեցիին, ու եկեղեցիին համար առաջնորդին ծառայ ըլլալը՝ առաքինութիւն է չէ թէ մեղք · որն որ Առաքեալն ալ կը հրամայէ թէ Քրիստոսի երկիւղիւը իրարու ծառայեցէք · ու ինքը Քրիստոս կը հրամայէ թէ ով որ կ'ուզէ մեծ ըլլալ ա-

մնում ծառայ ըլլայ, սուրբ Ժողովն ալ կը գրէ Կրօնաւորաց կանոնին մէջը, առաջնորդին հնազանդութիւն չունեցողին՝ համբերութիւնը և առաքինութիւնը, անօգուտ են, և անպիտան :

Եղբայրներէն մէկը չըլլայ որ ինչ և իցէ պատճառով իւր առաջնորդէն տրտնջայ, թէև տրտնջալու իրաւունք ալ ունենայ, որ չըլլայ թէ Աստուծմէ առնելու վարձքը կորսընցընէ, ու այգիին առտուան մշակներուն հետ այգիին տիրոջմէն ան անիրաւաբար տրտնջալուն համար դատուի : Վասն զի թէ որ Առաքեալը մարմնաւոր ծառաներուն կը հրամայէ որ մարմնաւոր տէրերնուն հնազանդ ըլլան, չէ թէ խաթեր համար ծառայելով, այլ միամիտ սրտով, որպէս թէ Աստուծոյ, զի Աստուծմէ պիտի առնէք վարձքը կ՚ըսէ․ հապա քանի՞ ևս առաւել դուք որ հոգևոր էք ձենէ կը պահանջէ Աստուած, անոնցմէ ևել ցուցընել եկեղեցւոյն հոգևոր առաջնորդներուն հնազանդութիւն, համբերութիւն և միամտութիւն : Վասն զի չէ թէ միայն պահոց և աղօթից ու ուրիշ ասոնց նման առաքինութիւններուն փոխարէն Աստուած աշխատութեան վարձ կուտայ, իւր պատուիրան-

ներուն այգին մէջ աշխատողներուն, այլ ուսելոց գործքի ու աշխատութեան ու ամէն բանի մէջ եկեղեցւոյ հաւատարիմ ըլլալու փոխարէն ։

Իսկ գողերը ու ժլատները ու խայինները անանկ յանցանք ունեցող դուրսի մարդոցմէն աւելի կը դատէ, ինչպէս որ տիրոջը կամքը գիտցող ծառան չգիտցողէն աւելի ։ Վասն զի ինչպէս սուրբ կերակուրները և ըմպելիքները պիղծ կենդանիներ անոնց մէջ խնալով ու սատկելով կ'ապականեն, ասանկ ալ արդար վաստակներուն մէջ. երբոր գողերուն ու ժլատներուն ձեռքը կը մտնայ իրենց բարեգործութիւնը հոգիներուն մէջ մկանց պէս կը խեղդուի, ու ուրիշ ունեցածները անիրաւութեամբ կը պղծեն ։

Ասկից զգուշանալ կ'աղաչեմ, ու ձեզի վնաս բերող գէշութիւններէն սուրբ պահել ձեր ձեռքը ։ Վասն զի ուրիշ մեղքերու համար եկեղեցւոյն մէջ ծանր անէծք չի տրուիր, քան թէ գողութեան համար ։

Ու չըլլայ որ մէկը մեղաց կարգը ասիկայ պզտիկ բան մը սեպէ, վասն զի Աստուծոյ մատովը քարեղէն տախտակին վրայ գրուած օրէնքներուն մէջ երրորդն է ասի-

կայ սպանութենէն ու շնութենէն ետքը ։

Ու չըլլայ որ մէկը կարծէ թէ շատ բաներ յափշտակելը գողութիւն կը համարուի ու քիչը չի համարուիր ։ Նոյնպիսին թող գիտնայ որ թէև վճարքին մէջը զանազանութիւն կայ, վասն զի օրինաց մէջ գողութեան վճարումը չորս անգամը հատուցանել հրամայեցաւ, ու տասը դահեկանին կամ հարիւրին կամ հազարին չորեքպատիկը մէկէն կամ երկուքինէն աւել է, բայց մեծին ու փոքրին շատին ու քիչին անունն ալ մէկ է ։ Վասն զի չէ թէ միայն շատ ու մեծ բան գողցողը միայն գող կ'ըսուի, ու քիչ ու պզտի բան գողցողին ուրիշ անուն կը տրուի . հապա՝ ընդհանուր ամեն գողերուն վրայ է գողութեան անունը և պատիժը, կ'ուզէ շատ գողնայ կ'ուզէ քիչ ։

Ու այս գողութեան անունի և բամբասանաց տակ ձգող սահմանը այնքան է, անոր ձեռքը ինչ և իցէ բան մը առնելու կ'երկընցընէ, ու աչքով ասդին անդին կը նայի որ կամ ինչքին տէրը չի տեսնայ և զանի բռնէ, կամ օտար մէկը հայհոյէ, այնպիսին գող է ու առածն ալ գողութիւն է ։

Ու չըլլայ որ մէկը ինքնիրեն իրաւունք տայ կամ իւր աշխատութեանը վարձ սե-

պելով գողցածը և կամ ուրիշ պարապ պատճառ տալով, անպատիժ համարի ինքզինքը Աստուծոյ դատաստանէն. անանկը առաջին օրինակէն թող խելքը գլուխը բերէ, Անանիան և Սափիրան միթէ իրենց աշխատութեան վարձ էր ուրիշին ինչքէն գողցածը. ինչպէս քուկինդ. ո՛չ. հապա իրենց սեպհական գեղին գինէն ու հայրենի ժառանգութենէն որ արծաթով ծախեցին, ու անկէց քիչ մը բան վերցընելով իրենց առանձնական պիտոյիցը համար, շատը Պետրոսին առջևը դրին, տես ի՞նչպէս մահուպարտական եղան հաւատոց վիմին արդար իրաւունքէն պատուհասելով, չէ թէ ստակին պէտքին համար որուն վրայօք Պետրոսին հոգը չէր, այլ ստութեանը համար. ինտոր որ կ՚ըսէր, դուն մարդու սուտ չըսիր հապա Աստուծոյ ։

Իսկ այս մեր առենը կը տեսնենք չէ թէ միայն գողութիւն, հապա գողութեան համար ստութիւն ալ. մինակ խօսքով ալ չէ, այլ մեծ երդումներով ուրանալ, որ այն մեղացը թողութիւն չի կայ ։ Վասն զի ան բանին համար ո՛չ կը զղջան, և ո՛չ կը դարձնեն անոր ուրկէ որ գողցան, որ գողին թողութիւն տալը գողցուած բանին տէրը ու-

նի , ու չէ թէ օտար խոստովանահայր մը ։ Անոր համար ով որ անոր չի զրուցեր ու չի տար ինչ որ գողցաւ անկէ ու զրկեց , չըսեմ չորս անգամ մաքսաւոր Զաքէին պէս, այլ և առածն ալ չի տար , յաւիտեան թողութիւն չընդունիր ։

Խելքը պակաս կրօնաւորներէն ոմանք ալ կան որոնք թէպէտ չէ թէ արտաքին բան , այլ եկեղեցիէն իրենց անձին ուժը ու յաջողակութիւնը կը գողնան , իրենց գործին մէջ կորիճ ու աչքը բաց ըլլալով ու եղբայրութեան գործին մէջ ծոյլ ու անհոգ , նոյնպիսիները Աստուծոյ դատաստանէն անպատիժ չեն մնար , աւելի թերահաւատութիւններնուն քան թէ ծուլութիւններնուն համար ։ Վասն զի չեն հաւատար աշխատութեան վարձը Աստուծմէ առնելու , այլ միայն մարդկային հատուցումը բանի տեղ կը դնեն . որոնց երբոր առաջնորդը իրենց ուզածին պէս պէտք եղած բանը տայ, աշխատանքին մէջ կը ժրանան ։ Իսկ երբոր քիչ մը քիչնալու ըլլայ գործին ծոյլ ըլլալուն վրայ , տրտունջ ալ կ'ուելըընեն ։

Այս բաներուն հետ որ Աստուածաշունչ գրքերէն գործելու պատուէր ունինք, թերնի ու լեզուի ալ դուռ ու դռնապան դը-

նելու՝ կ՚աղաչեմք․ որպէս զի օգտակար ու բարի խօսքերը թող տան որ նայէ, իսկ չար վնասակար ու անօգուտ խօսքերը սրտին մէջ որպէս թէ բանտին մէջ պահէն, թող չի տան միտքին որ այն չար զաւակները ծնանի, այլ մանաւանդ իրեն միտքին մէջ սատանայէն սերմանուած խորհուրդները խեղդել ։

Նաեւ որդ՝ չըլլայ որ մէկը իւր ընկերը դատէ, որ չըլլայ թէ ինքն ալ արդարադատ Աստուծմէ դատուի տիրոջը բանին պէս, մի դատէք որ չի դատուիք ։

Չըլլայ որ մէկը բամբասանք սիրէ թէև ճշմարիտ ալ ըլլայ նէ, թող թէ անիրաւ տեղը ։ Վասն զի ի՞նչ օգուտ կ՚ընես քու եղբօրդ անիկայ ուրիշի բամբասելով, քեզի քու բամբասելովդ վնաս ըրիր, ու անիկայ օգուտ մը չի գտաւ․ թէ որ կ՚ուզես քեզի ու անոր օգուտ ընել, Քրիստոսի խրատովը վարուէ ։ Զանի սիրով յանդիմանէ ինչպէս հիւանդ անդամը սպեղանիքներով, էն առաջ առանձին, թէ որ մտիկ չընէ, երկու և երեք վկայի առջև, ու թէ որ անոնցմէ չամչնայ ու չի զգաստանայ, եկեղեցւոյ մէջը ըսէ, ու թէ որ եկեղեցիին մէջ ամենուն առջին խաղք ըլլալովը ալ չի զղջայ, ան ատենը իրաւունք ունիս բամբասելու և

հեթանոսի ու մաքսաւորի կարգ սեպելու ։

Այս արդ՝ չըլլայ որ կրօնաւորներէն մէկը կամ պարապ տեղը մէկուն համար չարախօսելու ; կամ պարապ տեղը անիծելու, կամ անօգուտ կռիւներով ու վնասակար խօսքերով հակառակողներուն դէմ հակառակելու կամ վիճելու առենը ծանր ու անարգ խօսք խօսելու սորվեցընէ իր լեզուն աշխարհականներուն պէս, որ սուրբերուն չի վայլեր ։ Վասն զի թէ որ դատարկ խօսից համար Քրիստոս հաշիւ կ՚ուզէ ինչպէս որ ըսաւ. ի՞նչ պիտի ըլլան անոնք որ հոգ չընելով գարշելի ու գէշ խօսք կը խօսին անխրատաբար. մանաւանդ անոնք որ իրենց լեզունին մասխարկութեան ու ծիծաղական խօսքերու կը սորվեցընեն, օգգապազներու ու մուգայլիթներու նման; ու ծիծաղելու առեննին դէմքերնին կը փոխեն ու անմտաբար շատախօսութիւն կ՚ընեն ։

Ասոր համար կ՚աղաչեմ, որ ձեր խօսքերը անհամ ու անլի չըլլայ, անմիտ ռամիկներուն խօսքին պէս, այլ աղով համ գտածի պէս ըլլայ. ինչպէս որ Առաքեալը կ՚ըսէ, որ լսողներուն շահ ու շնորհք տայ, ու չէ թէ լսողներուն գանելիք ու գայթակղութիւն ըլլայ, նոյն իսկ օգտակար խօս-

քերն անգամ յաճախ ու անվայել ժամանակին մէջ չի խօսի իմաստութեամբ խօսիլ գիտցողը, որ չըլլայ թէ ձանձրանալով լսողները գանին, ու բարի խօսքերը առողները անարգանք տան, այլ քիչ ըլլան, ան ալ խոնարհութեամբ ու խաղաղութեամբ ։

Ու ձեր մաքրագոյններուդ խօսելու խօսքերնիս գլուխ կապելով սա ալ ըսենք, որ ձեր խորհուրդը ու խօսքը ու բոլոր գործքերը հոգւոյ ու մարմնոյ շարժմունքնիդ, անանկ պարկեշտ ու Աստուծոյ հաճելի ըլլան, որպէս զի Աստուծոյ անուանը ու կրօնաւորութեան կերպարանքներնուդ հայհոյութեան ու պարսաւանքի պատճառ չըլլայ, այլ տեսողներէն ու լսողներէն գովութիւն ու փառաւորութիւն առնելու պատճառ ըլլայ, որ չըլլայ թէ ձենէ մէկը հին Իսրայելին նման Մարգարէին բերնովը Աստուծմէ՝ իմ անունս հեթանոսներուն մէջ ձեզի համար կը հայհոյուի, խօսքը լսէ․ այլ մանաւանդ Քրիստոսի աշակերտներուն ըսած խօսքին արժանի ըլլէք ինքզինքնիդ պայծառ առաքինութեամբ, թէ մարդոց առջեւ ձեր լոյսը անանկ լուսաւորուի, որ ձեր բարի գործքերը տեսնան, ու ձեր Հայրը փառաւորեն, որն որ երկինքն է ։

Նաեւ այս կարճ խօսքս որ աշակերտութեան եղբայրներուդ ըսի Աստուծոյ փառացը համար, բաւական ըլլան։



Վանականաց սուրբ ուխտերուն
առաջնորդ եղողներուն ։

Քիչ մըն ալ դէպ 'ի երկինք ճանապարհորդող առաջնորդներնուդ իբրեւ ծառայակից հոգեւորական և Աստուածային բանին կերակուրը տանք, որն որ աչքի գործ և եկեղեցիին մարմնոյ սպասաւորութիւնը ունիք, որ ինչպէս որ աչքը մարդոյս ամեն լաւ կամ գէշ շարժմանը կ'առաջնորդէ, այնպէս ալ առաջնորդները իրենց առաջնորդեալներուն, ու ինչպէս աչքերնուն բիբքը երբոր ներքին ախտերէն մաքուր ըլլան սքանչելութեամբը դէպ 'ի ուղիղ ճանապարհը անմոլար կ'առաջնորդէ անձին. իսկ թէ որ գլխէն աչուըները իջնող մթին մըշուշները անտեսութեամբ լուսոյ երակները գոցեն, ինքն ալ խաւարեցաւ իր բոլոր անձը

մահուան խորխորատը կը ձգէ ։

Նոյնպէս ալ եկեղեցւոյ առաջնորդներէն, ով որ երկու աչքով լուսաւորեալ է. այսինքն Աստուածաշունչ գրոց գիտութեամբը և առաքինի գործքով, անբծութեամբ, սրբութեամբ և ամենայն արդարութեամբ, զորոնք Աստուծոյ պատուիրանքը կը սորվեցընէ. անանկը ինչպէս իր անձին, նոյնպէս բոլոր եղբայրներուն Աստուածային գործոց մէջ աղէկ կ՚առաջնորդէ, իսկ որուն որ մէկ աչքը բաց է և միւսը գոց, այսինքն կամ առանց առաքինութեան գործքերու գիտութիւն ունի և կամ առաքինութիւն ունի՝ առանց գիտութեան բոլորովին բարի չէ, և ոչ ալ կատարեալ. վասն զի անանկ մարդը միականի կը նմանի ։

Թէպէտ իմաստութիւն ունեցողը արդարութեան ճամբան խօսքով ուղիղ սորվեցընել գիտէ, բայց ինքը գործքով չերթալովը չի կրնար ուրիշները նոյն ճամբան երթալու համոզել. նոյնպէս այն որ առանց գիտութեան գրոց՝ սուրբ վարքով է, թէպէտ և ինքը Աստուծոյ օրինաց ճամբան կ՚երթայ. բայց որովհետև արժան եղածին պէս չի կրնար իմաստութեամբ առաջնորդել ուրիշին, անոր համար եկեղեցիին մէջ

շատ տնկարգութիւններ կը մտնէ ։

Իսկ անոնք որ երկու աչքով խաւար են, այսինքն Աստուածային գիտութիւններէ զուրկ և ամէն արդարութեան գործքերու մէջ ծոյլ են, մանաւանդ թէ ասոնց հակառակներովը լեցուած և ինքզինքնին եկեղեցւոյ առաջնորդ հանելու կը յանդգնին. որոնց պէս այս մեր թշուառ ժամանակին մէջ շատերը կը տեսնանք, այս գործքերուն ձեռք զարնելով Տէրունական առակին պէս կ'ըլլան. որ կ'ըսէ՝ թէ Երբոր կոյրը կուրին առաջնորդ կ'ըլլայ՝ երկուքն ալ խորխորատը կ'իյնան. որոնք չէ թէ Աստուծմէ այլ սատանայէն դրդուած կուգան այն առաջնորդութիւնը իրենք իրենց և առաջնորդեալներուն կորստեանը համար. անոր համար մենք ալ Աստուածային բանին սերմը անանկ առաջնորդներուն հոգիներուն մէջ ցանենք, որոնք Աստուծոյ օրէնքովը իրենց առաջնորդութիւնը վարել կը փափաքին, որոնք որ Աստուծով կ'սկըսին Աստուծով կատարուին ։

Որոնց կ'ըսենք աշակերտեալ եղբայրներուն վրայ անհոգ մի ըլլաք՝ երբոր հոգևոր և մարմնաւոր վտանգի մը մէջ կ'իյնան. վասն զի ամէն մէկուն համար հաշիւ պիտի

տաք, միայն նիւթական գործքերուն անթերի կատարումը մի ուզէք, ու անոնց ընելու հոգեւոր գործքին վրայ անհոգ մի ըլլաք. հապա գէշ գործքերէ հեռու կենալ ու աղէկ բաներու հետեւելու խրատ տուէք ինչպէս որ իրենց կերպարանքը և կարգերնին կը պահանջէ: Վասն զի աշխարհի և աշխարհական բաներու մեռած ըլլալը՝ և Քրիստոսի ու անոր պատուիրանացը կենդանի ըլլալը այս կարգիս յատուկ է, ինչպէս որ Պօղոս կը խրատէ. վասն զի օրինաց այգին գործելու կանչուեցան և ոչ թէ արտաքին մշակութեան գործերը, ու ո՛վ, ո՛վ այս տեղը մինակ այս կը գործէ և հոգեւոր բաները չի գործեր, կամ նիւթականը բոլոր սրտով՝ և հոգեւորականը 'ի հարկէ և կամ մարդու աչք մտնելու համար. Տէրունական հրամանը հոգիին ականջներով լսած չեղաւ, թէ Վաստըկեցէք չէ թէ կորըստական կերակուրը, այլ այն որ յաւիտենական կեանքը կը տանի:

Այս ալ գործել պէտք է, վասն զի դատարկութիւնը չար է. ինչպէս որ Պօղոս խրատ կուտայ մանաւանդ օրէնք ալ կը դընէ թէ Ո՛վ որ չի գործեր չուտէ ալ, զորն որ ինքն ալ կը կատարէր ըսելովը, գիշեր

ցերեկ կը գործէինք ուրիշի մը բեռ չըլլալու համար և այս ձեռքերս հոգաց զիս ու հետքիններս. սակայն մարմնական գործքերուն համար, իբրև մէկ աւելորդ բան մը հոգևորականները զանց առնելը Քրիստոսի աշակերտեալներուն շատ գէշ բան է, վասն զի՝ որովհետև մարմինը հոգւոյն երկրորդն է, պէտք է նախ հոգւոյն կերակուրը հոգալ. որք են աղօթք և ամեն բարեգործութիւնք, ու ետքը մարմնոյն և մարմնականներուն հոգը ունենալ. քանզի մարդկանց մէջ ալ նախ և առաջ տէրը կ'ուտէ ծառայներէն սպասաւորուելով ու ետքը ծառայները՝ տիրոջը մնացորդներէն. ու մեր քովն ալ՝ որովհետև մարմինը ծառայական և հոգին տիրական է, և մտքին կամքն ալ դատողական է, արժան է որ դատողականը երկուքն ալ կարգի մէջ պահէ. նախ և առաջ մարմնոյն սպասաւորութեանը հոգևորական կերակրով հոգին կերակրել ու ետքը հոգւոյն իմաստութեանը և տնօրէնութեանը մարմնոյն բանները հոգալ :

Արդ ասոր՝ և ասոր նման բարեկարգութեանց մէջ ձեր եղբայրութեան միաբանութիւնը պահեցէք, դարձեալ կողմնակցութեամբ տարբերութիւն ընելով ոմանք

սիրել՝ և ոմանք ալ երեսէ ձգել չըներ ; ո-
մանց պէտքը ունել ունելոք հոգալ և այլոց
հարկաւոր եղածն ալ չէր տալ . սուրբ Բարսե-
ղի կանոնադրութեանը համեմատ սէրը հա-
սարակաց ըլլայ , և պատիւն ալ որոնց որ
կը վայլէ ։

Իսկ կերակուրին բաժնուիլը ամեն մէ-
կուն աշխատութեանը համեմատ ըլլայ , շատ
ու քիչ , ծերերը և հիւանդները որոնք ի-
րենց մանկութեան ժամանակը իրենց ոյժը
եկեղեցիին աշխատութեանը տուին . անտես
մի ըներ որպէս թէ ժամանակին անպիտան
են , որ Աստուած չի բարկանայ . վասն զի
թէ օտար վտանգեալներուն ու թշնամեաց
անգամ խնամ տանել և ողորմել կը հրա-
մայէ Քրիստոս , ու չըներողներուն պատիժ
կ'սպառնայ . քանի՞ ևս եղբարց և եկե-
ղեցւոյն անդամներուն խնամք տանել պէտք
է . վասն որոյ ծերերը պատուեցէք և հո-
գացէք Առաքելոյն հրամանին համեմատ և
ըստ ձեր կարողութեան տկարներուն հոգ
տանելով՝ ու անոնց պիտոյքը պատրաստե-
լով խնամեցէք , գիտեմք որ այսպիսի բա-
րեկարգութեանց խափանուելուն պատճա-
ռը ժամանակիս աղքատութիւնն է , բայց
չէ թէ աւելին ալ կամաց յօժարութիւ-

նը և կարողութիւնը կը պահանջէ Աստուած :

Եկեղեցիին , կամ միաբանութեանը և կամ մեռելոց յիշատակի համար նուիրեալները առաջնորդները միայն իրենց անձին չառնեն , հապա եկեղեցւոյն պիտոյից գործածեն . նոյնպէս միաբանութեան հետ հոգեւոր պարտքը վճարէ , որ չըլլայ թէ արդար դատաստանին օրը ամեն մէկը իւր տուածը պահանջէ . և որովհետև այն ժամանակին ալ չունի հատուցանելու , իրեն ըրած բարեգործութիւնը առնեն տան փոխարէն :

Ու թէ որ նախկին առաջնորդը ինչ որ տուաւ իր օրը եկեղեցիին պիտոյից համար գործածեց հաստատուն վկայներով և պարտքերը հատուցանելու ժամանակ չունեցաւ մահը հասնելուն համար . յաջորդը որ եղբայրութեան առաջնորդութիւնը անկէց ետքը ժառանգեց պարտական է վճարելու և թէ որ անհոգ կը կենայ Քրիստոսի առջին շահովը պիտի վճարէ . իսկ թէ որ առածը եկեղեցւոյ պէտքին գործածելուն չեն վկայեր , թող առնողը վճարէ անդիի աշխարհքը :

Չըլլայ որ մէկը իւր սրտին չար ՚բաղ-

ձանքէն մեծերուն կաշառք տալով առանց ժամանակին առաջնորդին քննութեանը և հրամանին, վանքին առաջնորդութիւնը առնէ։

Աստ զի երկու իրաւացի պատճառ կայ վանքին առաջնորդը փոխելու կամ Աստուծոյ օրէնքէն դուրս անարժան բաներ գործելուն համար, ան ալ իրաւ վկայներով. կամ եկեղեցիին չէ թէ շինութեանը, այլ աւրուելուն պատճառ ըլլալուն համար. թէ որ ասոնք չըլլալով մէկը հակառակութիւն ընելու յանդգնի նէ՝ Աստուծոյ օրինացը դէմ կը մեղանչէ ։ Ու ինչ որ անգամ մը կանոն դրուած է ու առաջնորդներուն վըրայօք սուրբ Հայրերը խրատի կամ աւգտութեան համար խօսք խօսած են, թէ խօսքի թէ գործքի և թէ բարեձև կարգաւորութեանց վրայ այն ամեն աղէկութիւններուն գաղափարն ու օրինակը ձեր վրայ ցուցընելու ջանացէք, ու թէ որ ժամանակին աղէկութեան կողմանէ ձեռ ըլլալուն համար չէք կընար բոլորը կատարել նէ, գոնէ շատը գործքով կատարեցէք. ու պակաս մընացածներուն ալ կամքերնուդ փափաքը՝ և պակաս մնալուն համար ցաւ ու տրտմութիւն ցուցըցէք. որ երբոր ասոնց վրայ միտքերնիդ հաստատէք, բարւոյ հակառակ չա-

րը ձեր սրտին մէջ տեղի չէր կրնար ունենալ, ու պակաս մնալուն համար ալ ցաւ և տրտմութիւն ցուցուցէք ։

Վասն որոյ մենք ալ Աստուծոյ աղաչեմք, որ առաջնորդներնուդ և առաջնորդեալներնուդ երկնային ճանապարհը երթալու յաջողութիւն տայ, մեզի ալ մէկ տեղ. որ ամենքնիս ալ խոստացուած բարեացը արժանանանք ։ Քրիստոս Յիսուս մեր տէրոջմովը ։

---

### Բաղտատի մէջ գտնուած Եկեղեցւոյ առաջնորդներուն, որոնք Եպիսկոպոս կ'ըսուին ։

ՍՈՒՐԲ Եպիսկոպոսներուն կարգէն ալ խօսինք որ աշխարհիս մէջի հաւատացելոց հոգիներուն Աստուծմէ տեսուչ էք դրուեր, որ թէպէտ ըստ կարգի երրորդ դրինք բարեկարգութեան համար, նախ վանականներուն համար խօսելով, բայց դուք աստիճանով առաջին էք ։

Ձեզի կ'աղաչեմ ամենէն առաջ միտք

ընտրել ու իմաստութեամբ ճանչնալ ձեր ունեցած աստիճանին բարձրութիւնը ու գործը , թէ ուսկից սկըսաւ ու ի՞նչ բանի համար դրուեցաւ և անիկայ հաստատողները ի՞նչ ընել հրամայեցին . վասն զի երբոր մէկը ասոնք պէտք եղածին պէս գիտնայ նէ , այս երեքին մէկը պիտի շահի . կամ այս աստիճանին ծանրութիւնը ու դժուարութիւնը ճանչնալով ու իր տկարութիւնը գիտնալով , դիւրին ու հեշտալի բաներու պէս յօժարութեամբ չի դիմէ . հապա մէկդի կենայ թէև բռնադատուի իր բաղձանքէն կամ մերձաւորներէն , ինչպէս որ առջի Սուրբերը ըրին ու սորվեցուցին , կամ թէ յանձն առնէ ըլլալը՝ կը ջանայ Աստուծոյ հաճոյքը համեմատ այս գործոյն տընտեսութիւնը կատարել . կամ թէ պէտք եղածը չընէ նէ՝ կը ճանչնայ իր վրայ եղած բարիին պակասութիւնը ու վնասը . ու իրեն խղճմտանքովը իր անձը կը դատէ ինքզինքը յանցաւոր սեպելով :

Հիմա ուսկից սկըսիլը ըսենք :

Եպիսկոպոսութեան սկիզբը անկէց եղաւ , որ Հօր Աստուծմէ երդմամբ տուաւ քահանայութիւնը ըստ կարգի Մելքիսեդեկի . չէ. թէ ըստ Աստուածութեան , հապա

ըստ մարգարէութեան , չէ թէ անբանիներէն պատարագ մատուցանելով Ահարօնի քահանայութեանը նման , հապա իր անձը խաչին վրայ հօր Աստուծոյ կամաւոր պատարագ մատոյց մեզի հետ հաշտութեանը համար : Այս քահանայապետութիւնը որ ինքը խաչին վրայ իր արեամբը գնեալներուն համար մեռնելովը հօրմէն առաւ : Իր երկինք վերանալու ատենը աշակերտներուն շնորհեց ըստ Ղուկասու Աւետարանին թէ՝ Անոնց վրայ ձեռք դրաւ ու օրհնեց անոնք ու ետքը ինքը երկինք կը վերանար : Այս անոնցմէ նոյն օրինակը պահանջելով , թէ ինչպէս ես չէ թէ հանգստութեամբ , հապա չարչարանքով ու մահով քահանայութիւն առի մարդոց վրայ . դուք ալ նոյնպէս մահու չափ աշխատեցէք իմ ոչխարներուս համար , որոնք արեամբս ստացայ , անոնք ալ անոր հրամանին համեմատ ըրին մեռնելով ժողովրդեանը վրայ , որ առաւ Աստուած անոնց ձեռքը

Ու երբոր Քրիստոսի առաքեալները աշխարհէն ելնելու վրայ էին նէ՝ այն հաւատացեալներէն երկիւղած ու իմաստուն մարդիկ կ'ընտրէին . ու իրենց տեղը ժողովրդեանը գլուխ կը կեցուցանէին քաղաք-

ներու ու գաւառներու մէջ , որոնք եպիսկոպոս անուանեցին . որ վերակացու ըսել է ։

Հիմա ահա ասկից սկըսուիլը ըսինք ։

Ան ալ պէտք է գիտնալ թէ ինչո՞ւ համար Քրիստոս ու անոր առաքեալները այս եպիսկոպոսութեան գործը սահմանեցին . յայտնի է թէ քահանայից ու ժողովրդոց գլուխ ու հրամանատար ըլլալու համար , ու ամենուն վրայ վերակացուի պէս մտաց անքուն աչքը նայելու , մոլորեալները ուղղել , ու ուղիղները իրենց ուղղութեան մէջ հաստատուն պահել ։

Ու ի՞նչ հրաման եղաւ եպիսկոպոսին ըլլալ և ընել , ասիկայ Պօղոսը կը յայտնէ Տիմոթէոսին գրելով թէ , Պէտք է որ եպիսկոպոսը անարատ ըլլայ , Աստուծոյ տնտեսի նման հեզ , ցած սիրտ , պարկեշտ , հիւր սիրող , արդարութիւն սիրող , մաքուր , համբերող , արծաթ չի սիրող , չի կռուող , չի զարնող , հապա հանդարտ եայլն ։

Անարատ ըսելովը կը հրամայէ ամեն հոգւոր ու մարմնաւոր աղտերէ մաքուր ըլլալ ։

Իսկ Աստուծոյ տնտեսին նման ըսելով այս կ'իմացընէ որ , թէ որ մարդիկ իրենց ստացուածքին տնտես աղէկ մարդիկը կ'ընտրեն , այսինքն գողի պէս չի գողնայ , ու-

ընչիցը հոգ տանելու կամ պահելու անհոգ չըլլայ ։ Որչափ ևս արժանի է Աստուծոյ տանը որ սուրբ եկեղեցին է, անտեսներուն անարատ, արթուն ու զգոյշ ըլլալ ։ Նիւթական եկեղեցւոյ համար չեմ ըսեր, հապա մարդկանց հոգիներուն համար, որ կենդանի Աստուծոյ տաճար կը շինուին, որն որ պարտք է Աստուծոյ անտեսին որչափ որ զօրութիւն ունենայ Աստուածաբնակ տաճարներուն շինուածները անխախտելի պահել. ու իր անհոգութեամբը այն հոգևոր գանձերէն սատանային գողցընել չի տալ, ոչ իր գանձը և ոչ անոնց՝ որոնց որ տըն- տես դրուեր է նէ, ամէն օր անոնց հոգեւոր կերակուր պէտք է որ տայ ժամանակին, ինչպէս որ Տէրը կը հրամայէ ։

Հեզ, ցած սիրտ, պարկեշտ ըսելով կ'իմացընէ Մովսիսի ու Դաւթի նմանող ըլլալ հեզութեամբ, որոնք հին ատենը Իսրայելացւոց հովիւներն էին. անանկ ալ պարտք է այս նոր հովիւներուս հեզութեամբ ու հանդարտութեամբ հովուել ժողովուրդը, ինչպէս որ հովիւները հօտերը, և ոչ թէ աշխարհին իշխաններուն պէս հպարտութեամբ ու խստութեամբ ։ Իսկ ցած սիրտ ըսելով, խոնարհութիւնը կը սորվեցընէ.

վասն զի չի վայլեր եպիսկոպոսին հնազանդած ժողովրդեանը բռնաւորներուն գործակալներուն պէս հպարտութիւն ու գոռոզութիւն ընել . հապա խոնարհութեամբ ու հեզութեամբ ամենուն հետ վարուիլ , ինչպէս որ Քրիստոս ալ ինքզինքը օրինակ կուտայ այս բաներուս , ըսելով թէ՝ Ինձմէ սորվեցէք որ ես հեզ ու խոնարհ եմ ։ Կարծեալ խոնարհութենէն օգուտը ու հպարտութենէն ալ վնասը ցուցընելով կ'ըսէ , Ո՛վ որ իր անձը կը բարձրացընէ ցածնայ , ու ո՛վ որ իր անձը կը ցածցընէ բարձրանայ ։

Ու Պօղոսն ալ Տիմոթէոսը զգուշացընելով որ հոգևոր ու մարմնաւոր հասակով անկատար եղողը եպիսկոպոսութեան աստիճանին չի հրաւիրէ , տարուք մատղաշ չըլլայ կ'ըսէ , որ չըլլայ թէ հպարտանալով սատանայի փորձութեան հանդիպի ։

Վասն զի սատանան արարչին Աստուծոյ դէմ հպարտանալով երկինքէն վար ինկաւ , ու յաւիտենական պատժոյ և մշտնջենաւոր տանջանքի արժանի եղաւ . անոր համար ցած սիրտ ըլլալ կը հրամայէ , որ անոր ախտին բռնուելով անոր պատժոյն ալ հաղորդ չըլլան ։

Պարկեշտ , պարկեշտ անունը մենէ , բայց

հոգւոյ ու մարմնոյ ամեն շարժմանք պար-
կեշտութիւնը կուգայ , խօսքի մէջ շատա-
խօս չըլլալ ; ուտելու խմելու ու հագնելու
աշխարհականի պէս չըլլալ , հապա անոնց
նման ըլլալ ; որոնց՝ աշխարհը խաչը ելած
է . Նաև ճամբան երթալու ատեն երևելի
ու զարդարուած ձիով կամ ջորիով դէպ 'ի
վեր չերթան , հապա տկարացած մարմինը
տանելու համար հեծնան ինչ որ գտնան-
նէ ։ Ու սրընթաց ձիերով վազելու չելլան ,
ու շունով ու որսի թռչուններով վայրի
կենդանիներ ու թռչուն որսալու չերթան ;
ինչպէս որ կը լսենք կոր մէկ քանիներուն
համար թէ ասանկ են ։ Որ այս գործը այն
կարգը ունեցողներուն այնքան կը վայլէ ,
որպէս թէ կրօնաւորը փոխանակ վեղարի իր
գլուխը կարմիր գտակ դնէ , ու բուրդի ու
այծի մորթու տեղ բեհեզէ զգեստ հագնի .
այլ և իր ուտելիքը խմելիքը շատ ու անկար-
գութեամբ չըլլայ , հապա պարկեշտութեամբ
ու չափաւորութեամբ Աստուածաշունչ գըր-
քերուն խրատներուն համեմատ , ու բեր-
նին խօսքերը անխելք մասխարկութիւննե-
րով կամ աշխարհօրէն չըլլայ . մէկուն ա-
մչնալու գործերը կամ ինկած ըլլալը լեզուին
վըրայ պտըտցունելով չանարգէ , հապա սիր-

այլ բարի բանին ըղձիւ, Մարգարէին բա-ծին նման․ Որ լսողներուն օգուտ ու շնորհ ըլլայ, բառ. Առաքելոյն, չէ թէ վնաս ու ձանձրութիւն ու տաղտկական աստիճանին ալ անարգելու պատճառ :

Հիւրասէր, Աբրահամու ու Ղովտայ և ուրիշ Նահապետներուն նման, որոնք իրենց հիւրասիրութեամբը այնչափ Աստուծոյ հա-ճելի եղան, որ մինչև անգամ Աստուած ալ հրեշտակներովը մէկ տեղ ընդունեցին ու մեծարեցին : Ու հիւրընկալ եղէք զուեր, այլ հիւրասէր․ վասն զի հիւրընկալութիւնը եր-բեմն հարկաւոր պատճառով մը կամ բռ-նութեամբ կամ ամչնալով կամ մեծարանքէն զօրութիւն ու փառք ստանալու համար կ'ըլ-լայ, իսկ սիրով ընդունիլը ասոնց հիչ մէկն ալ չունի․ անոր համար խնդութեամբ կ'ըն-դունին եկած հիւրը և ոչ տրտմութեամբ, ու իրենց երեսը զուարթ կը ցուցընեն և ոչ խոժոռ, ու ժանիքը կախելով ծանր խօսք չեն խօսիր․ հապա ուրախարար ու խնդուն խօսքեր, որ հիւրերուն կերակուրէն աղէկ է : Այս պատճառիս համար կը հրամայէ եպիսկոպոսներուն ու քահանաներուն և ա-մեն քրիստոնէից ալ, որ չէ թէ միայն հիւ-րընկալ ըլլան, այլ և հիւրասէրս :

Վարեսէր, այն բարիքները ո՞րն են, որոնց համա՞ր կը հրամայէ սիրել ; մեր կարծած բարիքները չեն, որ մարմնական կամ հոգեկան ախտաւոր բարիքներ ու աշխարհի նիւթ են. այլ նախ և առաջ ճշմարիտ բարին սիրել, այսինքն Աստուած, որ բարութեան ակիզըն ու աղբիւրն է. երկրորդ անոր պատուիրանքները, որ բարեաց աղբիւր Աստուծմէ բղխած է. ըստ Գաւթի թէ՝ Քու պատուիրանքներդ ամեն ոսկիէն ու տպազիոնէն աւել սիրեցի. երրորդ մարդոց գործած բարիքը ։ Իսկ բարւոյն հակառակ չարը, այսինքն սատանան և անոր սերմանած մեղքը ատել ու ետ կենալ. նոյն Գաւթին ըստածին նման թէ՝ Մեղքը ատեցի ու անարգեցի, ու քու օրէնքներդ սիրեցի. նաև չարասէրը ու անդարձը ատել՝ ու հեռու կենալ, որոնք շատ անգամ խրատելէն ու չի դառնալէն ետքը՝ տէրը հրաժարիլ ու զանոնք հեթանոսի ու մաքսաւորի նման սեպել կը հրամայէ ։

Արդար, արդարութիւն անունը մէկ է, բայց զինքը ունեցող բարեաց ամեն մասունքները իր մէջը կը պարունակէ. ինչպէս որ առջի արդարները, որոնք Աստուծմէ վկայեցան՝ այսինքն Յօբը, Զաքարիան

ու Յովսէփը և ուրիշ շատերը . ասոնց նը-
ման պէտք է ըլլալ կ՚ըսէ եպիսկոպոսներն
ալ , արդար ու ճշմարիտ Աստուծոյ ու մարդ-
կան առջև , բանին ու գործոյն մէջ անի-
րաւութիւն ու ստութիւն չունենայ :

Սուրբ , առաջին սուրբը այն է , որ հոգ-
ւոյն հետ պատերազմող ամէն կիրքերէն ա-
զատ է , որ էն առաջ չէր խոցուիր ու դեղի
կարօտ չըլլար . երկրորդ սուրբը այն է որ ,
թէպէտև սատանային նետերովը կը զար-
նուի , չեմ ըսեր թէ մինչև վերջը սատա-
նային տակը չիյնար միշտ վիրաւորելով հո-
գին և մեղաց հեշտութեանը տեղ տալով ,
և այն սովորութիւնը երկրորդ բնութիւն
ընելով . այլ մանաւանդ ապաշխարութեան
դեղովը անցած վէրքերը կը բժշկէ , ու
գալիքներէն ալ աղօթից ու պահոց զինովը
և զգայարանքներուն պահպանութեամբը
կ՚զգուշանայ , որ վերստին սովորական փոր-
ձութիւններով չի խոցուիր . հապա այն-
քան կ՚առէ , որ անոնց յիշատակը ոչ թէ
հեշտութիւն , այլ տրտմութիւն կը բերէ
մտքին :

Արդ՝ ով որ այս առաջին կամ երկրորդ
կարգիս մէջն է , անիկայ է սուրբ և այս
առաքելական աստիճանիս արժանի , իսկ ան՝

որ մեղաց յօժարելով տեղի կուտայ ու չի պատերազմիր անոնց հետ, հապա հոգ ալ կը տանի չարութեանց խմորը իր սրտին մէջ պահելու. և միշտ հոգւով կը խոցի և չա-տեր իր խոցուելու պատճառ եղողները. հապա կը սիրէ ալ, ու վէրքերը բժշկել չի ջանար, հապա ամեն օր վէրքերը կը նո-րոգէ. անձնիկը չէ ու չըտուիր սուրբ, և Աստուծոյ ընտրութիւնովը որ Աստուածա-յին բաներուն սպասաւորելու չի կանչուիր. հապա իր սրտին ցանկութեամբը շարժելով Աստուծոյ ալ թշնամութեամբը անոնց մէջ կը մտնայ իր անձին և շատերուն կորըստ-եանը պատճառ ըլլալու համար։ . . . .

Համբերող, համբերութիւնը ամեն ա-ռաքինութեանց իբր հիւթ մը կամ սիրելի մըն է. վասն զի ով որ իր սրտին մէջ չա-րին համբերել ունի, առաքինութեան ա-մեն մասունքներն ալ ունի. և ով որ ա-նիկայ չունի, ամեն բարութեանց մէջ ան-հաստատ է. թէպէտև աղէկին կը ցանկայ, ու կ'սկըսի, բայց չի կատարեր, ինչպէս որ անիկայ որ ուզեց առանց մտմտալու աշ-տարակ շինել։ . . .

Այս համբերութեան սահմանը այս է. այն ամեն բանին համբերելու է, ինչ որ

մէջի Աստուծոյ օրէնքը կը հրաժարեցընէ , էն տուած գէշ խորհուրդներուն մտքին մէջը տեղ չի տալ , հապա համբերութեամբ դէմ կենալ ու սրտէն հալածել , որ չըլլայ թէ գործքով ալ կատարուի . Նոյն համբերութիւնը պէտք է աչքին ալ պահպան դընել , գէշ հայեցուածքով կամ չարակնութեամբ՝ հեշտութեամբ ծառայ չըլլալ , հապա մաքուր սրտով Աստուծոյ արարածներուն նայիլ : Ականջներուն ալ որ մեղսական բաներու յօժարութեամբ ունկնդիր չըլլալ , հապա օգտակար խօսքերու : Լեզուին ալ որ աշխարհականներուն խօսած բաները չի խօսի , որ սուրբ աստիճանին անվայել է , հապա պիտանի ու գովելի խօսքեր խօսի : Սրտին ալ , որ ոչինչ տեղը չի բարկանայ , հապա հեզ ըլլայ : Ձեռքին ալ , որ անիրաւ տեղը մէկու մը չի զարնէ , հապա բարեգործութիւն գործէ ու աղօթքի վերցընէ : Բերնին ալ , որ ժամանակէ դուրս կերակուրի չի մօտենայ , հապա պահեցողութեամբ կրթէ : Ոտքին ալ , որ հոգւոց գայթակղութեան ճանապարհները չերթայ , հապա արդարութեան ճամբան :

Համբերութիւնը թող չի տար զինքը ունեցողին և ոչ մէկ անդամին , որ չար

գործքերու չարժի, ահա՛ ատոնք և ատոնց նման բաները համբերութեան գործն է ։

Արծաթասէր ըլլալ, արծաթսիրութիւնը, որն որ Պօղոս ամեն չարեաց մայրը կ'անուանէ. թէպէտ ամեն մարդու ամեն գործի մէջ վնասակար է, թագաւորներու, դատաւորներու, իշխաններու ու գործակալներու և աշխարհի ամեն մարդու, բայց առաւել հոգևոր առաջնորդներու ։

Քանզի աշխարհային իշխանութեանց քով մարմնաւոր վնաս կուտայ կամ անիրաւ դատելով կամ զրկելով կամ յափշտակելով կամ զրպարտութիւն ընելով կամ գողութիւն ընելով կամ սպանութիւն ընելով կամ ատոնց նման բաներով. իսկ հոգևորաց քով հոգւոյն կը վնասէ. վասն զի այս ախտէն է անարժանները Աստուածային խորհրդոց սպասաւորութեան կանչելը, ձեռնադրողին ալ ձեռնադրուողին ալ կորըստեանը պատճառ ըլլալով, ու արժանաւորներն ալ ետք թողելը, պիղծը սուրբի պէս և սուրբը պղծի պէս սեպելով. եկեղեցւոյն մէջ այս ախտէն հազարաւոր աւրուած բաներ կայ, որ Աստուծոյ հաճելի չեն. որոնց համար Դաւիթ Հոգւով Սրբով կ'ըսէ, Անարգուին անանկները որ

արծաթով ընտրուած են . անոր համար Առաքեալը եպիսկոպոսներուն համար կը հրամայէ թէ՝ արծաթասէր , կռուող , զարնող չըլլան . ինչու որ՝ թէ որ դուն Քրիստոսի աշակերտն ես , մանաւանդ անոր փոխանորդը , անոր հեզութեան օրինակը ունեցիր . ինչպէս որ աշակերտներուն ալ կը հրամայէ թէ՝ Ինձմէ սորվեցէք որ ես հեզ ու խոնարհ եմ . որուն համար Եսայի մարգարէն ալ կ'ըսէ թէ՝ Չի պիտի պօռայ ու չի պիտի կռուի , և Տէրը ինքն ալ հեզերուն ու խաղաղարարներուն երանի կուտայ :

Եւ ոչ թէ ամէն բանի մէջ ներող ու հեզ պէտք է ըլլալ առաջնորդները , հապա յանցաւորներուն յանդիմանութիւնը ձեռք առնելու է . անոր ալ օրինակ կուտայ որ , Խարազան առնելով՝ վաճառականները տաճարէն դուրս հանեց , ան ալ չուանով շինուած խարազանով , և ոչ թէ կարծր նիւթերէ :

Առաջնորդները կը խրատէ որ յանցաւորին միայն կծութիւն գործածելու չէ , հապա սաստելու ատեն քաղցրութիւն ու ներողութիւն պէտք է ունենալ . անոր համար դարձեալ կ'ըսէ թէ՝ Հեզ ու հան-

դարպ եղէք, ու հանդարտութեան չափն ալ Քրիստոսի խրատը կը սորվեցընէ, որ միայն ինքզինքը չի հանդարտեր այլ և դիմացինն ալ. վասն զի մէկ երեսին ապտակ առնելէն ետքը անիրաւին առջին միւս երեսը դարձընել կը հրամայէ. որով գազանէն խստագոյն ալ է նէ՝ ոչխարէն ալ հանդարտ կ'ըլլայ. և Քրիստոս ինքը չէր աղաղակեր ու չէր կռուէր, հապա ոչխարի պէս սպաննուելու կ'երթար. Եսայի մարգարէին ըսածին նման, նոյն նմանութիւնը եկեղեցւոյ առաջնորդներն ալ իրենց վրայ պէտք է առնել, բայց չէ թէ ամենուն և ամեն ատեն. վասն զի ինքը անիրաւներէն արհամարհուած ատենը հեզութիւնը աղէկ է ու վարձուց ալ արժանի է. իսկ երբոր Աստուածային պատուիրանքները անզգամներէն արհամարհուած կը տեսնէ նէ, անանկներուն հանդարտութիւն արժան չէ, հապա բարկութիւն գործածելու է Եղիայի բարի նախանձովը վառուելով. ինչպէս որ Քրիստոս ալ՝ երբոր անոր վրայ նախատանաց խօսքեր կը ձգէին դիւահար ըսելով, ներելով պատասխան կուտար ըսելով թէ՝ Իմ վրաս դև չի կայ. իսկ երբոր հօրը ու հոգւոյն կը խօսէին ան ատեն կը բարկանար ու վրէժխնդիր կ'ըլլար.

այսինքն երբոր անոնք, որոնք որ սատա-նայի գործեր կը գործէին զԱստուած հայր կը կանչէին նէ, կ'ըսէ անոնց՝ Դուք սատա-նայի հօրմէ էք. ու երբոր Հոգւոյն սրբոյ գործքերը սատանայից իշխանին Բեհեղզե-բուղին կուտային նէ ; կ'ըսէր թէ՝ Ով որ որդւոյ մարդոյ համար բան կ'ըսէ թո-ղութիւն գտնայ. բայց ով որ սուրբ Հո-գւոյն կը հայհոյէ անիկայ թողութիւն չի գըտ-նայ. ասոնք և ասոնց պէս՝ երբեմն հան-դարտութեան և երբեմն բարկութեան օրի-նակները աղէկ են ու Աստուծոյ կամքը համեմատ, որն որ Առաքեալը կը հրամայէ թէ ունենայ եպիսկոպոսը :

Դարձեալ ասոր ալ կ'ըսէ վարդապետու-թեան խօսքին վերակացու ըլլալ, այսինքն՝ սորվիլ, գիտնալ և Աստուածային օրինաց քարոզութեան սպասաւորութիւն ընել, այս գործը առաջէն ունենալ ու ետքը նիւթա-կան բաներուն հոգ տանիլ, ինչպէս առաք-եալները ըրին ու սորվեցուցին. վասն զի կ'ըսէին թէ մեզի պէտք չէ Աստուծոյ խօս-քը թողուլ ու կերակուրի հոգ տանիլ. թէ-պէտև այն սեղանը աղքատաց ծառայելու համար էր, և ոչ թէ իրենց. բայց որով-հետև աղքատաց մարմինը կերակրելը պզտիկ

առաքինութիւն կը սեպէին, քան թէ առաքինութենէ աղքատ մնացած Հոգին կերակրելը Հոգևոր կերակուրով, այսինքն քարոզութեան խօսքերով: Անոր Համար մարմնական կերակուրներուն Համար Ստեփաննոսն ու ընկերները դրին որ ժողովրդոց սպասաւորեն, իսկ իրենք Աստուծոյ խօսքերը կը քարոզէին: Այս վարդապետութեան խօսքին վերակացու ըլլալը որ եպիսկոպոսներուն կը Հրամայէ, և ողջամիտները մխիթարելը այս է․ այսինքն անոնք որ Հաւատոյ կողմանէ Հիւանդութիւն չունին, անոնք որ առաքելական աթոռը կ՚առնեն, առաքեալներուն գործն ալ ունենալու են․ ինչպէս որ անոնց Հետևող առջի սուրբ Հայրերը անանկ էին:

Այս այն որ եպիսկոպոսութեան աստիճան ունի ու քարոզութեան վարժուած չէ, պէտք էր որ այս Աստուածային շնորհիս վարժուածներէն իրենց քովը ունենան․ որ ամեն մէկ ատեն Աստուծոյ խօսքին կերակուրը իրենց ծառայակիցներուն տան:

Հակառակորդներն ալ յանդիմանել կ՚ըսէ, առաջնորդներուն երկու գործ կը ցուցընէ վարդապետութեան բանին վերակացու ըլլալով․ նախ ուսուցանական Հրամա-

նէին համեմատ ծառայակիցներնին կերակրել · երկրորդ Ճշմարտութեան թշնամիները , որոնք որ հաւատոյ բանին ու Աստուծոյ օրինաց , ու եկեղեցւոյ աւանդութեանցը կը հակառակին , Աստուածային գիտութեամբ պապանձեցընել , որ ժողովուրդներէն պարզամիտները խաբեբայ խօսքերով իրենց կորըստեան խորխորատը չի ձգեն , ընտանի գազաններուն երկու գործին նման · որոնք վայրենի գազանները կը հալածեն , ու հովուին հօտն ալ արթուն կենալով կը պահեն · ինչպէս որ այս գործոյս վրայ դրուեցան ։

Արդ առաքեալները որ էն առաջ եպիսկոպոսութեան գործը առին Քրիստոսէ · ասանկ ըրին ու իրենց հետեւողներուն ալ սորվեցուցին որ այն կերպով վարուին ։ Իսկ հիմա այս թշուառ ժամանակիս մէջ անոնց բարի օրինակէն այնքան հեռացանք որ՝ մինչեւ անգամ Եպիսկոպոս ըլլալ ուզողները , ուրիշ բանի պատճառ չեն ճանչնար եպիսկոպոսութիւնը , բայց միայն զանազան կերպերով իրենց հնազանդեալներէն հարստութիւն ժողվել , ու փառաւորողներէն փառք որսալն , որն որ անարգանք ըսելու է և ոչ թէ փառք ։ Քանզի ճշմարիտ փառքը ան է որ բարի գործքերով Աստուծոյ անուա-

նը փառաւորութեանը մէկը պատճառ կ'ըլլայ · ինչպէս Տէրը կ'ըսէ ; Ձեր բարի գործքերը տեսնան ու ձեր Հայրը փառաւորեն · որ երկինքն է ։

Իսկ մարդոց մեղքի տուած փառքը չէ թէ միայն Աստուծոյ փառքերուն հակառակ է , ինչպէս որ Քրիստոս կ'ըսէ անոնց համար · Մարդոց փառքը Աստուծոյ փառքէն աւելի սիրեցին , հապա կեղծաւորութեամբ գովողներէն կ'անարգուին ախտաւոր մարդոց պէս · երբոր կը տեսնան որ իրենցմէ եղած փառքին ու գովութեանը ցանկալով ետեւէ կ'երթան ։

Հիմակուան եպիսկոպոսներուն ըրած ամէնէն դէշ գործքը չեմ ըսեր , որ պալատականներէն շատ անարգանք ու վնաս կը կրեն , առջի սուրբերուն պէս Աստուածային օրինաց համար չէ , որ աներանութեան արժանի էր , հապա սնոտի փառաց յուսոյ համար ու իրենց հնազանդեալներէն պէս պէս հնարքներով ու բռնադատութեամբ թալլածները , որ եկեղեցւոյ և աղքատաց համար ըլլալու հրաման տրուեցաւ · զանոնք կը ժողուեն մաքսաւորի պէս , ու աշխարհի բռնաւորներուն կուտան ։ Իսկ ո՞չ թէ անոնցմէ նեղութիւն քաշելով այս բա-

նը կ՚ընեն , վասն զի այս չար գործը՝ մեր ազգէն սկըսաւ և այլազգիներուն իմացուցին մէկ քանի փառամոլ և անէրկիւղ մարդիկ ։

Ասոնք իրարու հետ հակառակելով Քրիստոսի եկեղեցւոյն վրայ մինչև հիմա տուրքեր կ՚աւելցընեն , տուրք առնելու տուներու կամ ներկարաններու պէս , որոնց մեղքին թողութիւն չի կայ . ինչպէս որ Աստուծոյ դէմ մեղանչողներուն ։ Այս չար գործը եկեղեցւոյն մէջ խօթելու սկըսողները և կամ անոնք հոգևոր պատճառի մը համար Հայրապետաց ժողովքով աթոռէ ինկած՝ այլազգիներուն ուժովը ու տուրքեր աւելցընելով . դարձեալ եպիսկոպոսութիւնը ձեռք ձգելու ջանացողները , չէ թէ միայն եպիսկոպոսութեան արժանի չեն , այլ և ոչ քրիստոնէական հաւատոյ և կարգի , և ոչ քահանայական օրինաւոր թաղման , և ոչ սուրբ Պատարագին մէջ յիշատակուելու ։

Այս չարութեանց պատճառին համար ալ , և ճշմարտութեան և Լուսաւորչի սուրբ Աթոռոյն յայտնի հակառակութիւն ընողներուն համար ի՞նչ ըսենք . որոնք իրենց չար կամքովը ու աշխարհի բռնակալներուն հրամանովը իրենց անձը այս բարձր հոգևոր աստիճանին կը քաշեն , չէ թէ Ա-

տուծոյ ու մեր հաւօրէն ազգիս Աստուա-
ծային մարդոց ընտրուԹեամբը, ինչպէս օ-
րէնքն ալ անանկ կ'ուզէ. որով Քրիստո-
սի անդամոց գայԹակղուելու պատճառ կ'ըլ-
լան ։ Վասն զի Թէ որ Ահարօնի գլխուն
վրայ սուրբ Հոգւոյն շնորհքները կ'իջնան
որ է ՀայրապետուԹիւնը, ու գլխէն մօ-
րուքին վրայ որ է ԵպիսկոպոսուԹիւն, ու
մօրուքէն գրապանակին վրայ որ է Քահա-
նայուԹիւն, ու գրապանակէն զգեստին վրայ
որ է Ժողովուրդը ։

Արդ որ շնորհաց իւղը ունենան պիտի ա-
նոնք, որոնք Ահարօնի գլխէն օտարացեր են,
ու մեծն Մովսիսի ու Ահարօնի դէմ հակառակ
կեցող Դադանին ու Աբիրանին հետ գոր-
ծով միացեր են, կամ Թէ իրենք որ շը-
նորհքէն բաժնուած ու զրկուած կամակո-
րուԹիւնով մերկացան նէ, իրենց կորսըն-
ցուցածը ի՞նչպէս կրնան ուրիշին տալ ։

Որոնք այս բաներուն յանդգնելնուն հա-
մար, մեր տէր և եղբայր Գրիգորիս սըր-
բազան ԿաԹուղիկոսին ժամանակը՝ սուրբ
Լերանը վրայ Հայոց ազգիս սուրբ առաքինի
մարդոց երկու հազար հինգ հարիւրէն ա-
ւելի, եպիսկոպոսաց, վարդապետաց, վա-
նական հարց և այն սուրբ Լերանը ճգնա-

ւող , կ՚աղաչենք ձեզի որ ամէն կերպով պատրաստ ըլլաք հոգւոր հովուութեան գործոյ մէջ , զորն որ ճշմարիտ հովուապետէն ընդունեցիք . ամէն զգայարանքներով վերը գրուած սահմանին և սուրբ Առաքեալներուն ու անոնց հետևողներուն կանոնական խրատին համեմատ ։

Նանկ որ պատուիրանին տաղանդը ձեզի աւանդողին առջև համարձակութեամբ ու պարզ երես մնաք , շահերուն համարը կրկնապատիկ աւելցած տալով ։ Ուսկից երանաւէտ ձայնը լսէք թէ՝ Բարի ու հաւատարիմ ծառայ , որովհետև դուն քիչ բանի մէջ ալ հաւատարիմ ես , շատերուն վըրայ դնեմ քեզի , քու տիրոջդ ուրախութիւնը հրամմէ , այս ձայնին Քրիստոսի Յիսուսի շնորհքովը և ձեր աղօթքովը մենք ալ արժանի ըլլանք ։



## Քահանայից դասին ։

ՄԵՆՔ նորքը խօսքերնիս քահանաներուդ դասին վրայ դարձընենք, որ աստիճանաւ եպիսկոպոսներուն երկրորդն էք. ու ամեն հոգիները քահանայական գործով Աստուծոյ նուիրելու դրուած էք. սուրբ աւազանին մկրտութեամբը ամենքը երկնաւոր Հօրը որդեգիր՝ և Քրիստոսի ժառանգակից ծնանելով, և Քրիստոսի մեղսաքաւիչ մարմինը և արիւնը բաշխելով, անոնց հոգին անմահութեամբ կերակրելու ։

Դուք արդ՝ կ'աղաչեմ ամենքնուդ Քրիստոսի սիրովը, մնաց աչքերնիդ բանալ; և աշխարհիս մահաբեր թմբրութենէ արթըննալ, ու ճանչնալ երկնային գործիդ ոյժը՝ ուր կանչուեցաք. որ հրեշտակական ընտիր զօրութենէ ալ վեր է, որոնք անարատութեամբ ու սրբութեամբ կը պաշտեն ասիկայ ։

Դուք որովհետև ձեր անձը երկնային գործին մատուցանելու արժանի եղաք, չըլլայ թէ կերպով մը աղտ ձգելու պատճառ տաք պաշտօններնուդ մէջը. ինչպէս որ Ռուաք-

ու ան ձեզի տուաւ իրեն անուանը կոչումը, իրեն գործը անուանը հետ յանձնեց՝ իրեն ժողովուրդը հովուելու և միշտ անոր բարի գործք սորվեցընելու,. և ինքզինքնիդ ամենուն բարի օրինակ տալու. ինչպէս որ Պօղոս ալ կը գրէր Տիմոթէոսին թէ՝ Անհոգ մ'ըլլար ան շնորհքներուն վրայ որ քեզի տրուեցաւ քահանայ ձեռնադրութեանդ ժամանակը. ու դարձեալ թէ՝ Քահանաները կրկին պատուոյ արժանի ըլլա՛ն, որո՛նք որ կ'աշխատին խօսքով և քարոզութեամբ. անոր համար կ'աղաչեմք որ գործն ալ անուանը կոչմանը համեմատ կատարէք, և ձեր ժողովրդին հօր և ծնողի պէս. ամեն տեսն անոնց հոգևոր խրատներ տուէք, եկեղեցւո՛յ՝ հրապարակի՝ ու տան մէջ, միշտ ուսուցանելով, ամեն մէկը իր հասակին համեմատ, զգուշացընելով ու Աստուածային գործերու յորդորելով: Այս թէպէտ ամեն բարութեան տեսակով ու առաքինութեամբ կատարեալ էք, սակայն եկեղեցիին պայծառութեանը և սուրբ Պատարագին պատուական և մաքուր զգեստներուն վրայ անհոգ մի ըլլաք. որպէս կը լսեմք մէկ քանիներուն համար թէ՝ հասարակաց զգեստներով և աղտեղեալ ոտից ամանով սուրբ Ռեմը կ'ելլեն, և.

սարսափելի խորհուրդը անխորհրդական ըզ-գեստներով կը կատարեն, և անիկայ ինքզինքներնուն պարկեշտութիւն կը սեպեն, ժողովուրդը եկեղեցիէն դուրս հանելով և դուռը անոնց դէմ գոցելով. և չէ թէ միայն ասս, այլ և անմտաբար կը բամբասեն մէկ քանի եկեղեցիները ու մեր բարեկարգութիւնը :

Այս արդ՝ չըլլայ որ մէկը անխորհուրդ և ոչինչ սեպէ քահանայական զգեստը. զի որպէս Մովսէսին ատենը ցուցուեցաւ սուրբ Պատարագին խորհուրդը, նախ օրինակով, ու նոր ատեններս կատարեցաւ 'ի Քրիստոս. նոյնպէս հին քահանաները նոր քահանայութեանս օրինակ էին, ու Ահարոնի պատմուճանը նոր քահանաներուն զգեստին օրինակ էր, որ և սուրբ Առաքեալները հոգւոյն սրբոյ տնօրէնութեամբը եկեղեցիին լրումը կարգի դրին կատարելապէս, ու ամէն տեղ քահանաներ ու սարկաւագներ կը ձեռնադրէին ու կը դնէին, ու կը պատուիրէին ներքին ու արտաքին մաքրութեամբ սպասաւորել փրկական խորհուրդին, որ և բոլոր աշխարհիս վրայ ընդհանուր Քրիստոնեայ ազգաց եկեղեցիները պայծառազգեստ վայելչութեամբ սրբութեանց սպա-

ղեցիներ կը չինէին . քան թէ երբոր եկեղեցին խաղաղութիւն գտաւ նէ ։

Այս արդ՝ գիտուններէն ոմը այս խաւարային անկարգութիւնը տեսնալով որ աղքատութենէ և աւերմունքէ առաջ եկան , և Աստուծոյ բարկութիւնները , աւանդութիւն և օրէնք կարծելով , անոր համար յանդգնին Աստուծոյ տուած հրամաններուն հակառակիլ . այլ մենք մեկդի թողունք հակառակողներուն անխելք վէճերը . Աստուծոյ հնազանդ եղողներուդ այս պատուէրն ալ տանք այս բանին համար ։

Հրաման չի կայ քահանաներուն Աստուծմէ և մենէ՝ Պատարագի սուրբ զգեստը չի հագած Պատարագ մատուցանել , կամ Աւետարան կարդալ , կամ ձեռքը Խաչ առնել , կամ ուրիշ Սրբութեանց մօտենալ , և ասոնք որ կարճը կարճոյ գրեցինք և ասոնց նման բաներ , արտաքին մարդոյ զգուշութիւններ են . , ով որ Աստուածային խորհրդոց սպասաւորութիւն պիտի ընէ , ներքին մարդուն համար ալ ըսենք , որ արտաքին զարդը հոգևոր պայծառութեան զարդին օրինակ է ։ Չենէ մեկը Աստուածային խորհուրդին չսպասաւորէ անարժանութեամբ , և կամ ժողովրդէն

մէկը առանց քննելու հաղորդէ, որ Յու-դային կամ խաչը հանողներուն հետ չի դա-տապարտուիր :

Չըլլայ որ մէկը իր սրտին մէջը մեղքե-րուն գործքերը պահելով առանց ճշմարտա-պէս խոստովանելու անանկ մօտենայ Տէրու-նական խորհուրդին սրբութեանը, որ Աստուծոյ բարկութիւնը չի շարժէ իրեն և աշխարհին վրայ. և վռնտուի Աստուածային հարսանիքէն. քանզի խաւարային մեղաց զգեստը հագնելով Աստուծոյ եկեղեցին մը-տաւ, որ Ա երին հարսանքանին օրինակ է, որ և պիտի լսէ այն ահագին խօսքը՝ Ընկեր ինչո՞ւ հոս մտար թէ որ հարսնիքի լաթ չու-նէիր, և թէ դուրս հանեցէք անիկայ, այ-սինքն արքայութենէ, ու մէջ տեղէն կորեցէք, այսինքն հաւատքը և սուրբ աւազանին և քահանայութեան շնորհքը հանեցէք վրայէն; ու անիկայ հաւատացեալներուն հետ միան-չունենայ, այլ անհաւատներուն հետ. քանզի չի հաւատաց թէ՝ Աստուծոյ մարմնոյ և ար-եանը կ'սպասաւորէ, այլ լոկ հաց, ու լոկ գինի սեպեց. ու անոր համար անարժանու-թեամբ և առանց խոստովանութեան յան-դըգնեցաւ մերձենալու :

Աւ. արդ կ'աղաչեմք, այս երկնաւոր խոր-

հուրդը մարմնական գործ մը չէ սորվելը , հապա ահիւ և դողութեամբ ստացաւորեցէք Աստուածային խորհուրդներուն . վասն զի թէ որ սուրբ Սերովբէն օրինակին մէջ ունելիքի կարօտ կ՚ըլլար սեղանին վրայի կայծակներուն մօտեցած ատենը . մենք որ հողեղէն և մեղաւոր ենք մեզի քանի՛ զգուշութիւն և մաքրութիւն պէտք է այն օրինակին ճշմարտութեանը մօտենալու ։

Անոր համար դուք որ սուրբ խորհուրդին սպասաւոր էք ամեն ատեն պատրաս-կան էք մտքերնիդ ու զգայարանքներնիդ պահպանելու ամեն վնասակար բաներէն , և առաւել այն օրը՝ որ Աստուծոյ պիտի մերձենաք ։

Վասն զի թէ որ Աստուծմէ Մովսէսի ըսուեցաւ որ մեռեալ մորթով այն տեղը չի կոխէ՝ ուր տեղ Աստուածութեան հուրը երեւցաւ . մեզի որչափ արժան է մենէ նախ մեղաց մեռելութիւնը քակելու , ու ետքը Աստուծոյ խորհուրդին մօտենալու . որ չէ թէ միայն Մովսէսին նման Աստուծոյ հետ խօսիմք պիտի կամ Աստուծոյ յետոյքը տեսնանք , հապա ձեռքով պիտի շօշափենք անշօշափելին . ու շրթունքով պիտի համբուրենք սէրը , ու բերնով պիտի ճաշակենք

ամենուն կերակրողը , և սրտերնուս մէջ պի-
տի ընդունենք , ու հոգւով պիտի միանանք
անոր հետ , ու Աստուծոյ հետ միաւորելով
շնորհօք Աստուած պիտի ըլլանք . անոր հա-
մար աչքերը , ականջները ու լեզուն և ա-
մեն անդամները կրթեցէք բարի բաներու
շարժիլ , ու չար բաներու անշարժ մնալ ,
ու պարկեշտութեամբ ու սրբութեամբ աշ-
խարհական ցանկութիւններէն ու զբօսանք-
ներէն միտքերնիդ մէկդի առէք ; ու ետքը
երկնային խորհուրդին սպասաւորութեան
մօտեցէք , որ չըլլայ թէ ձեզի դատապար-
տութեան համար Քրիստոսի մարմինը և
արիւնը կերած ու խմած ըլլաք Առաքելին
ըսածին համեմատ , այլ մեղաց քաւութիւն
ու հոգւոց մաքրութիւն ըլլայ ձեզի ու ձեր
ժողովրդեանը ։

Ու չըլլայ թէ որպէս լսեցինք մէկ քանի
աներկիւղ քահանայից համար որ քաղաք-
ներու մէջ կը բնակին թէ՝ առտուընէ մին-
չեւ Պատարագին ժամանակը՝ քաղաքին վա-
ճառափողոցները կը պտըտին առուտուր ը-
նելու համար , որոնց սիրտը զգայարանքնե-
րէն շատ նետեր կրնան զարնուիլ տեսնա-
լով , ու լսելով , ու խօսելով , ու անվա-
յել գործեր գործելով , և անկէց կուգան

եկեղեցին մտնելու կը յանդգնին , և ուրիշ քահանաներուն չնած նշխարհովը առանց Սաղմոսի ու աղօթքի Պատարագ կը մատուցանեն , որոնց կը պատուիրեմք ասկէ ետքը անանկ աներկիւղ ու չար սովորութիւններէն ետ կենալ . ու նախ գիշերուան ու ցերեկուան աղօթքովը միտքը սրբել , ինչպէս որ վերը ըսինք , ու ետքը սուրբ եկեղեցին մտնալ , ու սուրբ Պատարագով Աստուծոյ դէմը ելլել .

Մէկ քահանայ մը առանց մէկուն հաւատքին ու գործքին խոստովանութիւնը գիտնալու , թէ իրեն ըլլայ այն խոստովանութիւնը և թէ ուրիշ քահանայի մը Քրիստոսի մարմնոյ և արեան հաղորդութիւնը չի տայ անոր առողջութեանը կամ հիւանդութեան ատենը , կամ թէ գիտնալով մէկուն անարժանութիւնը մարդահաճութեան համար Աստուածային խորհուրդը կուտայ , անով անոր վրայ եղած չարութեան կարծիքը ծածկելով , այնպիսին է որ սրբութիւնը շուներուն կուտայ , ու մարգարիտն ալ խոզերուն առջին կը ձգէ :

Պատարագող քահանաներէն մէկը մէկու մը ոխակալութիւն ունենալով իր սըրտին մէջ , Աստուածային խորհուրդին չի

մօտենայ ․․ ու Պատարագը Աստուծոյ առջև անընդունելի չըլնէ , հապա առաջ հաշտուիլ եղբօրը հետ , ու ետքը գայ Աստուծոյ Պատարագը մատուցանէ ․ Քրիստոսի հրամանին համեմատ ։

Այս սահմանը հաղորդուողներուն վրայ ալ ըլլայ ․ բայց այս օրէնքը հաւասար պատիւ ունեցող եղբայրներուն մէջն է ․ քահանայից քահանաներուն հետ , և աշխարհականաց աշխարհականներուն հետ ։

Իսկ թէ որ քահանան՝ ժողովուրդներէն մէկը Աստուծոյ օրէնքը կոխելուն բանադրած ըլլայ ․ և ան ալ հպարտանալով չի շիտկուիր , ու ան քահանայէն թողութիւն չի խնդրեր , քահանան առանց խղճմտանքի Պատարագը մատուցանէ , ու դատապարտութեան տակ է ան , որ չի շիտկուեցաւ ու թողութիւն չի խնդրեց ․ քանզի և Քրիստոս տրամեցունողին անօգուտ տեղ թողութիւն տալ չի հրամայեր , հապա թէ որ առջևը ինկած ապաշխարելու խօսք կուտայ , այն ատենը քեզի ըրած յանցանքին թողութիւն տաս կ՚ըսէ ․ իսկ թէ որ մեղուցեալը քահանային առջին ինկած շիտկուելու խօսք կուտայ , քահանան ալ մարմնական բանի մը համար ոխակալ ըլլալով թողութիւն չի տայ , պէտք

չէ հաշտելէն առաջ Պատարագ մատուցանէ։

Նաև սատանան շատ պատճառներ կուտայ քահանաներուն իրարու հետ խռովելու ու վիճաբանելու , ու ոխակալութեան ու նախանձու ախտով ամեն ժամանակ հոգին տանջելու , որ ագէտներուն և կոպիտներուն մէջ աւելի հաստատուած է , որ մէկը ագահութեամբ իրարու ժողովուրդէն յափշտակելով , և որ մէկը փառասիրութեան համար իր ընկերը ճզմելու , և ուրիշ շատ ատելութեան պատճառներով կը կոխեն իրար սիրելու պատուէրը , և Քրիստոսի աշակերտութեան նշանը , որոնց ըսաւ թէ՝ Ասով աշխարհք ձեզ պիտի ճանչնայ թէ իմին աշակերտներս էք երբոր իրար սիրէք , անոնց մենք ալ Առաքելին պատուիրանը կուտանք թէ՝ ձեր բարկութիւնը մինչև արեգակին մտնելուն չի տևէ ու սատանային տեղի մի տաք , այսինքն՝ թէ որ խաղաղութիւնը որ Քրիստոս աշակերտացը տուաւ , ու անոնցմով ալ մեզի , սատանան ձեզմէ հանել կը նայի ու իր խռովութիւնը խախաղութեան տեղ ձեր մէջը սերմանել կը ջանայ նէ անոր տեղէ մի տաք երկար ժամանակ ձեր հոգիներուն մէջ բընակիլ , որ ձեր սրտին մէջը եղած Աստու-

ծոյ տաճարը ատելութեամբ ու ոխակալու-
թեամբ չարին բնակութիւն չընենք , հապա
բարկութիւննիդ շարժելու ատենը որ սա-
տանային փչելէն կը բորբոքի , արեգակին
մտնելէն առաջ մարեցէք անխկայ հոգիին
խաղաղարար ջրովը , որպէս զի խաղաղասէր
ըլլալով Աստուծոյ որդի ըլլաք երանու-
թեան խոստմանը համեմատ , Աստուծոյ
Ճշմարիտ Որդւոյն գործը ձեր վրայ իրօք
կատարելով , ան՝ որ երկինքին ու երկրին
մէջ իրեն խաչին արիւնովը խաղաղութիւն
ըրաւ ։

Իսկ թէ որ ընկերին հետ խռովեալ քա-
հանաներէն մէկը , ատելութիւնը սէրէն ա-
ւելի՝ ու խռովութիւնն ալ խաղաղութե-
նէն աւելի կը սիրէ , ու տրտմութեան
պատճառը չի քակեր ․ իրեն եղբօրը հետ
չի հաշտուիր մէկուն խոնարհելու , և հաշ-
տութիւն խնդրելու ատենը՝ քահանայագոր-
ծութիւն ընելու չի համարձակի , որչափ որ
տրտմութեան ու բարկութեան սատանան
իր մէջը բնակեցուցած է ․ վասն զի լոյսը
խաւարին հետ ի՞նչ միաբանութիւն ունի
կ՚ըսէ Առաքեալը կամ Քրիստոս Բելիա-
րին հետ , քանզի գրուած է թէ ինչպէս
որ սէր ունեցողը Աստուած իր սրտին մէջ

կը բնակեցընէ, որովհետեւ Աստուած սէր է, Նոյնպէս անոր ատելութիւն ունի սատա-նան իր անձին մէջ կը պահէ, զի ատելու-թիւնը անոր կերակուրն է, ինչպէս որ ա-մէն չար գործքերն ալ. Անոր համար ձենէ ամէն մէկը որքան որ ատելութեամբ աւելի ընդարձակ տեղ կուտայ սատանային, Քրիս-տոսի մարմնոյ եւ արեանը արժանի չէ ըն-նակութիւն ըլլալու։ Ու թէ ոխակալու-թեան ու նենգութեան հոգւով կը համար-ձակի զանի առնելու, մատնիչ Յուդային նման կ՚ըլլայ որ պատառէն ետքը սատանան անոր սիրտը մտաւ,

Ու հիմա կ՚աղաչեմ ձեզի ամենքնիդ միաբանութեան ու կռուի մէջ ծանրաշարժ ըլլալ, ու հաշտութեան ու խաղաղու-թեան մէջ դիւրաշարժ ըլլալ. ու անոր մարմ-նական յառաջադիմութեամբ զօրաւոր է, թող չի ջանայ ընկերը զրկել ու անիրաւել, որ չըլլայ թէ զրկելոց դատաստանը տեսնող Աստուածը իրեն դատաւոր ու դատախազ ունենայ, ու անոր անցաւոր կեանքին մէջ զրկեց, անոնց կեանքին մէջ վաշխով հա-տուցանէ։

Չապա ձեր մէջ մեծ՝ ու իմաստութեամբ հաստատուն եղողները, պզտիկները ու պա-

կատամիտները շահեցէք , անոնց ներող ու երկայնամիտ ըլլալով , որով եղբայրները շահելովնիդ Աստուծմէ վարձ պիտի ընդունիք ։

Բայց պզտիկներուդ կը պատուիրեմ խոնարհութիւն ու հնազանդութիւն ցուցընել ծեր ու իմաստուն քահանաներուն . ու դուք սանկ բարեկարգութեան մէջ ըլլալով՝ Աստուծոյ անուանը փառաւորութեանը պատճառ կ՚ըլլաք , դուրսի մարդոց առջին՝ ու ձեր ժողովուրդին ալ բարի նախանձու ։ Իսկ թէ որ ձեզի կռուի ու հակառակաբանութեան ու իրարու հայհոյութեան մէջ տեսնան , ինչպէս են շատերը , մանաւանդ թէ ամենքն ալ՝ բաց 'ի մէկ քանիէն , արտաքին տեսնողներէն Աստուծոյ անունը ձեզի համար կը հայհոյուի , ու ձեր ժողովուրդը Աստուծոյ պատուիրանքներէն առաւել կը խոտորին , ու ձեր պատճառաւ Աստուածային օրինաց ուղիղ ճանապարհէն խոտորողներուն պատիժը դուք պիտի կրէք ։

Ծուլութեան կամ աշխարհին զբաղմանց համար քահանայական ուսմունքներէն տգէտ մնալու կուրութիւնը ձեզմէ մէկը թող չի սիրէ , բայց թէև ամենքն ալ ամեն շնորհօք կատարեալ ըլլալը անհնարին

է , որն որ քահանաներէն Աստուածային օրէնքը կ՚ուզէ , բայց հարկաւոր բաներուն մէջ անպակաս ըլլալու պարտաւոր են , այսինքն՝ եկեղեցական գիրքերը ուղիղ կարդալ , և ձայնաւոր մանր ուսմունքները եկեղեցիին մէջ կարդալ , և ետքը քահանայութեան ձեռնադրուիլ ։

Բայց պաղի սուտ քահանաներուն համար կը լսենք , որ ոչ միայն ուրիշ ուսմունք չեն գիտեն ծուլութեան համար , մանաւանդ՝ անհաւատութեան համար , հապա Դաւթի Սաղմոսն ալ բովանդակ չեն գիտեն , որ առանց այն հարիւր հիսուն փոխ բերնով Աստուծոյ հետ խօսելու Պատարագ չըլլար , ինչպէս սուրբ Հարք աւանդած են ։ Ոմանք սուրբ Պատարագին աղօթից խօսքն ալ բերնանց չեն գիտեն , ու սուտ պատարագով անխաբելի Աստուածը և մարդիկը ու ննջեցելոց հոգին խաբել կը կարծեն՝ մարդկանց աչքին առջին կեղծաւորելով , որոնց դատաստանը Աստուծոյ առջին ամեն մեղքերէն ծանր է , որոնք անկէց ետքը Պատարագ մատուցանելու արժանի ալ չեն , թէև յանդիմանութենէն ետև բերան ընեն ։

Հապա թէ որ կ՚ուզեն իրենց հոգին դատապարտութենէ փրկել , մեծ ապաշխարու-

կասամիտները շահեցէք , անոնց ներող ու երկայնամիտ ըլլալով , որով եղբայրները շահելովնիդ Աստուծմէ վարձ պիտի ընդունիք ։

Բայց պզտիկներուդ կը պատուիրեմ խոնարհութիւն ու հնազանդութիւն ցուցընել ծեր ու իմաստուն քահանաներուն . ու դուք ասանկ բարեկարգութեան մէջ ըլլալով՝ Աստուծոյ անուանը փառաւորութեանը պատճառ կ'ըլլաք , դուրսի մարդոց առջին՝ ու ձեր ժողովուրդին ալ բարի նախանձու ։ Իսկ թէ որ ձեզի կռուի ու հակառակաբանութեան ու իրարու հայհոյութեան մէջ տեսնան , ինչպէս են շատերը , մանաւանդ թէ ամէնքն ալ՝ բաց 'ի մէկ քանիէն, արտաքին տեսնողներէն Աստուծոյ անունը ձեզի համար կը հայհոյուի , ու ձեր ժողովուրդը Աստուծոյ պատուիրանքներէն առաւել կը խոտորին , ու ձեր պատճառաւ Աստուածային օրինաց ուղիղ ճանապարհէն խոտորողներուն պատիժը դուք պիտի կրէք ։

Ծուլութեան կամ աշխարհին զբաղմանց համար քահանայական ուսմունքներէն տգէտ մնալու կուրութիւնը ձեզմէ մէկը թող չի սիրէ , բայց թէև ամէնքն ալ ամէն շնորհօք կատարեալ ըլլալը անհնարին

է , որն որ քահանաներէն Աստուածային օրէնքը կ՚ուզէ , բայց հարկաւոր բաներուն մէջ անպակաս ըլլալու պարտաւոր են , այսինքն՝ եկեղեցական գիրքերը ուղիղ կարդալ , և ձայնաւոր մանր ուսմունքները եկեղեցիին մէջ կարդալ , և ետքը քահանայութեան ձեռնադրուիլ :

Բայց պաղի սուտ քահանաներուն համար կը լսենք , որ ոչ միայն ուրիշ ուսմունք չեն գիտեն ծուլութեան համար , մանաւանդ՝ անհաւատութեան համար , հապա Դաւթի Սաղմոսն ալ բովանդակ չեն գիտեն , որ առանց այն հարիւր հիսուն փոխ բերնով Աստուծոյ հետ խօսելու Պատարագ չըլլար , ինչպէս սուրբ Հարք աւանդած են : Ոմանք սուրբ Պատարագին աղօթից խօսքն ալ բերնանց չեն գիտեն , ու սուտ պատարագով անխաբելի Աստուածը և մարդիկը ու ննջեցելոց հոգին խաբել կը կարծեն՝ մարդկանց աչքին առջին կեղծաւորելով , որոնց դատաստանը Աստուծոյ առջին ամեն մեղքերէն ծանր է , որոնք անկէց ետքը Պատարագ մատուցանելու արժանի ալ չեն , թէև յանդիմանուելէն ետև բերան ընեն :

Հապա թէ որ կ՚ուզեն իրենց հոգին դատապարտութենէ փրկել , մեծ ապաշխարու-

թեամբ, որ պէտք Աստուծոյ դէմ բերած մեղքերնուս քաւութիւն գտնուին ։

Քահանաներէն մէկը քաջ անդք ու առանց մեծ զգուշութեան աշխարհական գործ մը համարելով՝ Մկրտութեան սուրբ խորհուրդը չի կատարէ, ու Աստուածային բաներուն հետ ծիծաղական խօսքեր ու մասխարկութիւններ չի խառնէ. ինչպէս կը լըսենք մէկ քանի տգէտ և աներկիւղ մարդոց համար՝ որ կ՚ընեն, որ իրենց դատապարտութեանը և անմեղ երախաներուն սրբոյ Հոգւոյն շնորհքը կիսկատար ընդունելու պատճառ կ՚ըլլայ անիկայ, հապա ինչպէս սուրբ Պատարագը այնպէս ալ սուրբ Մկրտութեան խորհուրդին բոլոր պաշտօնը և Աստուածաշունչ խօսից ընթերցումը՝ և աբարողութիւնը երկիւղիւ կատարեցէք. ու թէ որ այսպէս ընէք՝ հաւատացէք թէ ի՞նչպէս իջաւ Հոգին սուրբ իրեն փառակցին վրայ Յորդանանու մէջ, անանկ ալ ամեն ուղղափառ հաւատքով մկրտելոց վրայ ալ կ՚իջնայ. որոնք հայր Աստուած որդեգրութեան կը կանչէ շնորհօք, ինչպէս որ իւր բնութեամբ որդին, դուք ալ կ՚ըլլաք սպասաւոր սուրբ Հոգւոյն Աստուածագործութեան շնորհքին առնելը. մանաւանդ թէ Ա-

տուծոյ Որդւոյն մանկաբարձի պէս կ՚ըլլայ ձեր ձեռքովը կատարելով եւ անոնց մօրմէն՝ այսինքն աւազանին ծոցէն զանոնք վեր առնելով ։

Ու քահանաներէն մէկը հաց ուտելէն ետքը առողջ մանկանց Մկրտութիւն ընելու չի համարձակիր, այլ միայն երբոր մահուան երկիւղ ունին. այլ նախ Մկրտութեան գործը կատարէ ու ետքը սուրբ Պատարագը մատուցանէ, ուսկից մկրտեալն ալ հաղորդէ ։

Ու անհաւատ մարդիկներէն ու կնիկներէն՝ որոնք երկրպագող չեն Քրիստոսի, մըկրտեալ մանկանց կնքահայր չընէ մէկը. վասն զի իրենք որ ամենասուրբ Երրորդութեան խոստովանութիւն չունին նէ՝ հաւատքին դաւանութիւնը մկրտեալին բերնէն քահանային ուզած ատենը ի՞նչպէս կրնան տալ.

Վասնորոյ մարմնական ընչասիրութեան համար՝ տգէտ աշխարհականներուն այս բանը ընել մի տաք. ու թէ որ կը յանդգնին՝ դուք մի վրանին առնէք մկրտելը, որ մկրտուողը կատարումէն պակաս չի ձգէք, ու Աստուածային մեծ խորհուրդը անհաւատներուն առջին ծիծաղելի չընէք, որ թէ հընար էր անոնցմէ հիչ մէկուն ալ արժան չէր Մկրտութեան ատենը սուրբ Աւազանին

մօտ կենալ, որ Ճշմարտութեան հակառակ եղողներուն համար Հոգին սուրբ մկրտեալ-ներէն կը հեռանայ ։

Ու ձենէ մէկը Մկրտութեան անգին շը-նորհքին համար կամ մեռնելու մարդու մը հաղորդ տալու համար բանի արծաթի գին չուզէ, հապա ով որ ունի և սիրով կու-տայ՝ եկեղեցւոյ նուէրի պէս՝ առէք, և որոնք որ աղքատ են մի՛ բռնադատէք ։

Այլազգներուն զաւակը մկրտելու համար ալ կ՚ըսենք որ սովորութիւն եղած է հին ժամանակներէն ։ Ու Քրիստոսի հրամանին դէմ է, ինչպէս ըսաւ՝ Սրբութիւնը շանց չի տալ, որ արժանի էր խափանել ու չի թողուլ, վասն զի ի՞նչ օգուտ է ու-րիշին բերանովը Քրիստոս խոստովանիլ, ու Մկրտութեամբ զանի ընդունել քանի որ անբան ու անզգայ է, ու երբոր կը մեծ-նայ հասակաւ՝ դարձեալ ուրանալով մեր-կանալ, և Քրիստոսի Աստուածային տը-նօրէնութեան խորհուրդը փառաբանելու տեղ՝ իրեն սուտ հաւատքին համեմատ՝ հայ-հոյել. ասոր համար մեծ դատապարտութիւն-ներ պիտի կրեն, տիրական պատկերը՝ որ սուրբ Աւազանը վերստին նկարագրեց ա-նոնց վրայ աւրելնուն համար. քան թէ բը-

նաւ չի կնքուածները՝ բայց որովհետեւ այդ-քանին մէջը աղէկութիւն մ՚ալ կայ, վասըն զի մկրտեալներէն շատերուն մահուն վախճանը՝ մանկութեան հասակին մէջ կը հասնի՝ ու անանկները չէ թէ կորուսեալներուն հետ, հապա փրկեալներուն հետ փրկութեան արժանի կ՚ըլլան, որովհետեւ ան մէկ քանին սատանայէն յափշտակելով Քրիստոսի գունդին մէջ կը խառնենք, անոր համար իրաւունք չի սեպեցինք բոլորովին խափանելը։

Բայց այս քանին համար միայն կը պարտաւորինք քահանաներուն՝ որ ագահութեան ախտի համար չի յորդորեն զանոնք ու յօժարութեամբ չընդունին, այլ դժուարաւ ու բռնի յանձնառու ըլլան սանկ բաներու․ վասն զի թէ որ հաստատուն պիտի մնային իրենց հաւատքին մէջ, ձեր յորդորը և փափաքը բարի էր․ բայց որովհետեւ մարմնով ապրողները դարձեալ ջրէն պիտի անցնին, լուսաւոր ոչխարներէն այծերուն սեւութեանը պիտի փոխուին, մեր սուրբ Լուսաւորչին տեսլեանը համեմատ․ անոր համար՝ անոնց համար եղած ջանքը անօգուտ է, վասն զի շահը քիչ ու վնասը շատ է։

Չենէ մէկը գաղտնի չի պսակէ մէկը,

Հապա թէ որ ծնողք ունի ու միաբան ու չի բաժնուած է նէ, անոնց գիտութեամբը ու կամօքը ըլլայ, ու թէ որ ծնողաց տակը չէ նէ հասարակաց աչքին առջին դրուի պսակը, որ ամենէն վկայեալ ըլլայ, որ ուղիղ է և ոչ Աստուծոյ օրինացը դէմ, որ երգերուն ու նուագարաններուն ձայներն ալ այս բանը կը նշանակեն, իբրև թէ՝ ամենուն աչքը ու ականջը պսակելոց վկայ կը բռնէ, իսկ՝ գաղտնին անվկայ է և անհաստատ ու ըստ օրինաց չէ. պատուէր կուտամք այս բանէն մէկդի կենալ ու չի յանդըգնիլ ագահութեան համար այսպիսի բաներու։

Ընաթող մարդիկներուն կամ այրաթող կնիկներուն կանոնական հրամանէն դուրս մէկը պսակ չի դնէ, որ քահանայական կարգէն չի լուծուիք դուք. ինչպէս որ կանոնը կ՚ըսէ ու գրուած պսակը քակուի. Թէ որ բռնութիւն կը բանեցնեն ու չի բաժանուիր, պոռնիկներուն կարգը համարուած ըլլան։

Ոռևանդ ըռուածներուն ալ մէկը պըսակ չի դնէ. վասն զի Աստուծոյ օրինացը հակառակ է և բիւր չարեաց պատճառ սատանայէն յորդորուելով մոլեկան սիրոյն։

Այս չարերը կամ որ սուտ պսակէն ետքը երբոր դիւական ցանկութիւնը կը յագենան, մեծ ատելութեամբ իրարմէ կը բաժնուին, ու այսպիսիներուն պսակ դնողները անոնց չարութեանցը հաղորդ կ'ըլլան :

Չըլլայ թէ հայրենի ժառանգութեանը ագահելով, կամ ուրիշ պատճառի համար քահանաներէն մէկը պսակէ անմեղ տղաքը, որ անկէց շատ վնասներ և ետքը իրարմէ բաժնուելու պատճառ կ'ըլլան. այլ պսակին ժամանակը տասն և հինգ տարուան լրացած երիկ մարդուն արութեան հասակին ատենն է, ու երկոտասանին կամ քիչ մը առաւել կնոջը. որպէս զի կարող ըլլան իրարու հետ հաճութեամբ զուգելու՝ զուգութը հաստատ ըլլալու համար, և չէ թէ անբաններուն նման կամք և յօժարութիւն չունենալով, անհաստատ ըլլայ կամ պատահական բան մը. մարդը պէտք է տարուոք ըլլալ քան զկինը, ինչպէս որ Աստուած նախ Ադամ ստեղծեց ու ետքը Եւան :

Քահանաներէն մէկը բռնաւորաց բռնութենէն՝ և երիկ մարդուն ու կնոջը յօժարութիւնը չեղած չի պսակէ, որ այլազգեաց իշխանութեան տակը եղած Հայաստանեայց կողմերը կ'ըլլայ տէյի. կ'իմանանք. վասն զի

այն պսակը անհաստատ ու լուծանելի է, պսակադիրներն ալ առանց պատժոց չեն, թէ և գործը ակամայ է, բռնաւորաց կաշառ տուողներն ալ՝ որ այն անիրաւ գործին իրենց պաշտպան ըլլալու համար կուտան, առաւել դատապարտութեան ու անէծքի արժանի են. որ Աստուծոյ օրէնքը և եկեղեցւոյ դատաստանը մեծերուն բռնութեամբը քակելու կը նային, վասն որոյ այնպիսի պսակին լուծումը առանց խղճոյ է, քանզի Աստուծոյ հրամանին համեմատ չէ, հապա մարդկային բռնութեամբն է։

Արեամբ իրարու մերձաւոր եղող ազգականներուն օրհնութեան պսակ չի դըրուի, հապա մինչև որ երկու կողմէն չորրորդ ազգը (այսինքն պորտ) կատարեալ դատած չըլլայ նէ։

Ու թէ ի՞նչ պատճառաւ սուրբ Հայրերը 4 թիւը ամուսնութեան սահման կանոնադրեցին՝ իմացընենք որ գիտնաք։

Քանզի մարմնոյս բնութիւնը չորս տարերքէ ըլլալով յիրաւի մարմնական ազգակցութիւնն ալ մինչև չորրորդ թիւը կը հասնի, որ այսպէս է. մէկ հօրմէ երկու եղբայր ըլլալով՝ իրենց մէջ հաւասար ունին հօրը գոյացութիւնը, բայց անոնց զաւկըննե-

քը եղբայրութեանը արեան կէսը ունին, ու երրորդ դասակը որ եղբայրներուն որդիներէն է, միայն արեան կէսին կէսը, բայց չորրորդ դասակը որ առոնցմէ է, մնացած արիւնին չորրորդ մասը ունի, ու այս է սահմանը ու ազգականութեան արիւնին ծայրը :

Այս որովհետև Աստուծոյ ու Աստուածայիններուն ամեն ջանքը մարդիկ իրար սիրելնուն համար է. անոր համար իրաւունք սեպեցին, որոնք որ իրարմէ օտարացեալները ամուսնութեան սիրով ու կապով միաբանելու հոգւով սրբով օրէնք դրին. իսկ՝ արեամբ մերձաւոր եղողները, իրարու հետ սիրով ըլլալու ազգակցութիւնը բաւական համարեցին, և ազգականներուն ամուսնութեան թոյլ չի դրուելուն առաջին պատճառը այս է, ուրիշ պատճառներ ալ կայ, որ իմաստուններուն թողուցինք քննել :

Արդ՝ ասանկ ընտրութեամբ Աստուծոյ օրէնքին համեմատ եղած պսակը, ինչպէս որ գրեցինք, ուրիշ ժամանակ չի դնէ քահանան, հապա օրուան առաւօտէն մինչև ճաշուին ժամանակը, ու կերած խմած կամ անօւակ կնիկ երիկ մարդ եկեղեցիին մէջ թող չի տաք, որ ուրիշ ժամանակ ալ արժա-

նի չեն եկեղեցւոյ ։ որ անոնցմով Աստուծոյ տաճարը չի պղծուի և օրհնութեան պսակը չաղտեղանայ ։

Ու սուրբ պսակը կատարուելու ատենը՝ երգողներուն ձայնը դադրի մինչև եկեղեցիէն ելլաննէ, որ Աստուածային երգերուն հետ սատանայական՝ երգեր չի խառնուի ։

Ու Բուն բարեկենդանի օրէն սկսուած մինչև պահոց շաբաթուն կատարումը որ Պէնտէկօստէէն ետքն է, քահանաներէն մէկը տգիտութեամբ չի պսակէ մէկը, և ոչ տարւոյն ամեն կիւրակէ օրը, ինչպէս կանոնով առջի Հայրերը հաստատեցին ։ քանզի քառասնորդական պահոց օրերը, սգոյ ու տրտմութեան օրեր է, ու Քրիստոսի Չարչարանաց խորհուրդ է, և չէ թէ հարսանեաց ուրախութեամբ ու գինի խմելու օրեր, բայց յինունքն ու կիւրակէները Քրիստոսի երկնաւոր փեսային հարսանեաց ու եկեղեցւոյ հարսին օրինակը ունին՝ որ պիտի ըլլայ 'ի հանդերձեալ աշխարհին, երբոր արդար մարդոց ազգը հրեշտակաց ինը դասին հետ միանան, ինչպէս որ այդ օրերուն անունն ալ կը յայտնէ յինունք ըսուելով ։ որով և բոլոր հաւատացեալները հարսանեաց ա-

ուագմասոի մանուկ կոչեց Քրիստոս, որոնց կը հրամայէ չի պահել քանի որ փեսան իրենց հետ ունին, որ անոր Յարութեան օրերն են, մինչև անոր յերկինքը վերանալու ատենը. այս բանին համար պատշաճ չի համարեցին սուրբ Հայրերը՝ հոգևոր հարսանեաց օրինակ եղած օրերը՝ երբոր ոչ արք կը կարգուին և ոչ կանայք, ինչպէս՞ ըսաւ Քրիստոս. Այս մարմնական հարսնիքը՞ չի կատարել որ ախտաւոր ու ծննդական է։ Հարսնիք գացող քահանաներուն ալ այս խրատը կը պատուիրեմք։

Գինարբու աշխարհականներու տղոց հետ շատ չի կենալ հոն, ուր շատ կը մեղանչեն անպատրաստները, որոնք հոն շատկեկ կը կենան, տեսնելով լսելով ու անկարգ խօսքեր խօսելով, հապա երբոր կերակուրը կը լմննայ, ու մինչև երեք գաւաթ խմելով շուտ մը սեղանէն ելլան, որ գինեմոլներուն հետ չի գինովնալով արտաքին տեսնողներուն ծաղր չըլլայ. չէ թէ միայն ինքը՝ հապա ամեն քահանաները մէկէն ըսելով, ու ծանր ապաշխարութեամբ որ պէտքի արբեցութեան մեղքը քաւէ և կրկին քահանայագործութեան արժանի ըլլայ։

Քահանայներէն մէկը իրեն վրայ սա-

տաճպյական յանցանք չի ցուցընէ, այն որ Աստուծոյ հակառակ կեցաւ ու կործանեցաւ, ու եպիսկոպոսին ընդդիմութիւն չընէ գործքով կամ խօսքով ինչպէս որ Կորխը ու Դաթանը․ Մովսիսի ու Ահարոնին, որ անոնց կործանումը չառնէ Աստուծմէ։

Մանաւանդ անոնք՝ որոնք կը յանդգնին եկեղեցւոյ վրայ տուրքեր դնելու, կամ առաջիններէն զրուածները շատցնելու, ու այս պատճառաւ այլազգիներուն բռնութեամբը եպիսկոպոսները աթոռէն կը հալածեն, ու իրենք ժողովրդոց հրամանատար կ'ըլլան և անոնց տեղը տուրք կուտան, որոնք որ ինքզինքնին Աստուծոյ աններելի դատաստանին ու դատապարտութեան անէծքին տակը կը ձգեն, անանկներն իրենց կեանքին մէջ քահանայագործութիւն ընելու ու մեռնելու առենը Հաղորդութիւն առնելու կամ քահանայական թաղման արժանի չեն։

Դարձեալ քահանաներէն ու ժողովուրդներէն մէկը եկեղեցւոյն դատաստանը մարմնական իշխաններուն դատել չի տայ՝ թէ այլազգի եղեր և թէ քրիստոնեայ, որ առաքելական ու կանոնական հրամաններէն չի դատապարտուի, ինչպէս որ կը գրէ Պօղոս Կորնթացւոց, Կը համարձակի՞ ձենէ մէկը

Թէ որ իւր ընկերին հետ բան մը ունի տանիրաւններուն առջին դատել , և չէ թէ սըրբոց առջին . սուրբ Հայրերը իրենց կանոնին մէջ քահանայութենէ լուծել կը հրամայեն տսանկ ընողը ։

Դարձեալ քահանաներէն մէկը քաղաքի կամ գիւղի հոգաբարձու՝ կամ աշխարհի իշխաններուն գործակալ՝ կամ հարկերու ու տուրքերու գրող՝ կամ աշխարհի ուրիշ գործի մէջ չըլլայ . քանզի Տէրունական հրամանին համեմատ՝ անկարելի է երկու տէրանց ծառայել ու հաճոյանալ մէյ մը Աստուծոյ տանը , որ կենդանի Աստուծոյ եկեղեցին է և մէկ մըն ալ իշխաններուն տանը ։ Վասնորոյ անանկը մէկէն մէկզի կենալ պիտի ընտրէ , կամ աշխահի հոգաբարձութենէն կամ քահանայական գործքէն , բայց թէ որ աշխարհական գործքերուն հետ կը յանդգնի քահանայական պատիւն ու ժողովրդոց տեսչութիւնն ալ ունենալ, բըռնութեամբ է անիկայ՝ ու Աստուծոյ ու մեր հրամանաւը չէ , որ այնպիսին ալ պիտի դատուի երկու յանդգնութեանը համար ։

Ոմանց քահանայից համար կը լսենք որ ձիավարժութիւն կ՚ընեն , ու զէնք կ՚առնեն զինուորներու պէս , ու ձի վազցունելու

խաղերու ուրախութեան մէջ ձի կը վազցունեն անոնց հետ , ու կենդանի որսալու կ'երթան , ու նետ կը նետեն , և ուրիշ ասանկ բաներ , որ աշխարհականներուն կը վայելէ , և չէ թէ եկեղեցւոյ սպասաւորներուն . վասն զի մեր զինուորութեան զէնքը մարմնաւոր չէ , ինչպէս Առաքեալը կ'ըսէ , հապա հոգևոր և Աստուածային , որով կը պատերազմինք չէ թէ մարմնոյ և արեան հետ , հապա չար սատանայից իշխանութեանը ու պետութեանց հետ որ երկինքին տակն են ։

Վանորդս կ'աղաչեմք ասկէ ետքը. այս անկարգ սովորութիւններէն ետ կենալ , և մինակ ճանապարհի մէջ՝ թէ հետի ըլլայ և թէ ձիով՝ զէնք առնեն երկիւղի կարծիք եղած տեղը , և ան ալ պարկեշտութեամբ չէ թէ զինուորաց պէս կապարճով ու զարդարուն սուրով . ուրիշ ատեն պէտք չէ կարգաւորներու զէնք առնել կամ երիվարով վազել տղոց նման , տեսողաց բաբասանաց պատճառ տալու համար . վասն զի անոր Պօղոս առաքեալը կը խրատէ , լուսոյ զէնքը զգենուլ այսինքն ուղղափառ հաւատքը ու բարի գործքը , ու անոնցմով կռուիլ մեր բնութեանը թշնամւոյն հետ . ար-

ժամն չէ այս խաւարային զէնքը գծենուլ վրանիս, ու մեզ նման մարդիկներուն հետ ասով պատերազմիլ կամ անբան կենդանիները խոցոտել կամ հպարտ երիվարով պարծանք ցուցընել, բայց մինակ տկարութեան համար. վասն զի ասոնցմէ ու ասանկներէն Աստուածային պատուիրանքները մեզի կ'արգիլեն ։

Թէ որ քահանայ մը իւր ժողովուրդներէն մէկը պատուիրանազանց ըլլալուն համար բանադրէ նէ, ու անիկայ յամառութիւն ընելով յանցանքին մէջ մնայ ու չի դառնայ, ուրիշ քահանայ մը անիկայ իր եկեղեցւոյն մէջ չընդունի. ինչպէս տգէտ քահանաներէն ոմանք սովոր են անանկները իրենց քաշելու, և ով որ ասիկայ կ'ընէ անիկայ պատճառ կ'ըլլայ անոր մեղքէն չի դառնալու, ու իւր անձը անոր յանցանքին պատիժին կցորդ կ'ընէ ։

Ապա ասանկ բաներուն համար այս օրէնքը հաստատուի ձեր մէջը, որ քահանայի մը բանադրածը ամեն քահանայ եղբայրներն ալ անոր նման իրենցմէ հեռացընեն, մինչև յանցաւորը զղջալով իր ծուռ ճամբայէն դառնայ, ու առջին ինկած թողութիւն խնդրէ և ուխտ ընէ Աստուծոյ

ապաշխարելու , և մէյ մըն ալ ան չար սո-վորութեանը մէջ չիյնալ ։

Ու երբոր այս կերպով թողութիւն առ-նէ իր քահանայէն , ան ատեն միւս քա-հանաներն ալ ընդունին անիկայ Աստուծոյ սիրովը ։

Այս ուղղութեան օրէնքը եպիսկոպոս-ներուն մէջ ալ հաստատուի , որպէս զի եպիսկոպոսէ մը բանադրեալը քահանայ ըլ-լայ կամ աշխարհական եպիսկոպոս մը իշ-խանութիւն չունի անիկայ քակելու բանադ-րողէն զատ ։

Այս պատուիրանքն ալ կուտանք այրի քահանաներուդ՝ որ քաղաքի մէջն են . վասն զի ան որ դեռ երիտասարդ հասակին մէջ իւր ամուսինը կը մեռնի , թէ որ կ՚ուզէ իւր հոգին մեղքերէն ու թամբասանքներէն ազ-րեցընել , ու սուրբ խորհուրդին արժանա-ւորապէս սպասաւորել , աշխարհքէն հրա-ժարուելով կանոնական հրամանին համեմատ կրօնաւորութեան կարգը մտնէ . վասն զի աշխարհքին մէջ կնիկներուն հետ խօսակ-ցութեան ու տեսութեան մէջ սովորական ընկերութեամբ վարուելով , մանաւանդ քա-հանայութեան օրէնքին համեմատ անոնց խոս-տովանութիւնը լսելով՝ անհնար է Աստու-

ծոյ սրբութեամբ ծառայել․ հապա թէ որ
նեղ ճամբէն քալել ծանր կուգայ իրեն ,
ընդարձակ ճանապարհը սիրելով, պէտք է ա-
նոր դադարիլ սուրբ Պատարագին սպասաւո-
րութէ, թէ և յայտնի վատութենց մէջ չի բամ-
բասուի ալ նէ , քանզի չի կրնար երիտա-
սարդական հասակին մէջ մաքրապէս սրբու-
թեանց սպասաւորել․ մանաւանդ՝ ան որ
աղօթքով , պահօք , պարկեշտութեամբ և
երկիւղածութեամբ չի զգուշանար իրեն ան-
ձին , հապա աներկիւղ կը վարուի կերակու-
րի ու խմելիքի և ամեն տեսակ ընդարձակ
վարքի մէջ ։

Իսկ որուն որ ամուսնոյն վախճանը
ծերութեան մօտ ժամանակը կը հասնի , և
իւր անձին վստահ է սրբութեամբ և անա-
րատ վարքով ու առանց բամբասանքի Աս-
տուծոյ սպասաւորելու , որ գովութիւն առ-
նէ տեսնողներէն և ոչ թէ բամբասանք․
այն իր եկեղեցիին մէջ կենայ որքան որ
կ'ուզէ ։

Ու արդ՝ քահանաներուդ խրատ ըլլա-
լու համար ինչ որ համառօտ գրեցինք ,
չէ թէ իշխանաբար հրաման ընելով, հապա
ծառայակցապէս աղաչելով՝ մեր կողմէն բա-
ւական ըլլայ , բայց մերին պակասը կրնաք

կատարելապէս իմանալ առաջին Հայերուն կանոնական գրուածքէն, որ եկեղեցւոյ մանկանցը կանոն գրին 'ի փառս Աստուծոյ։

## Աշխարհի իշխաններուն։

ԱՍՏՈՒԾԱՅԻՆ պատուիրանաց խրատը ձեզի ալ դարձընենք, որ աշխարհային քաղաքավարութիւն ունիք։

Նախ և առաջ իշխաններնուդ, որ ժամանակիս նեղ ատենը տեղ տեղ շատ կամ քիչ զօրքերու և կամ գաւառներու կը տիրէք։

Կ'աղաչեմ ձեզի որ Աստուծոյ օրէնացը անհնազանդ չի գտնուիք, հապա ինչպէս կ'ուզէք որ ձեր ծառաները ձեր հրամանը հնազանդութեամբ և անպակաս կատարեն, (որովհետ թէ որ ձեր հրամայածներէն մէկը անկատար ձգեն, պատիժ կը կրեն ձեզմէ), նոյնպէս և դուք՝ արդիւնաւոր բնութեամբ ծառայ էք Աստուծոյ, երկիւղիւ և հնազանդութեամբ ծառայեցէք Աստուծոյ. որ

Աստուծոյ անհնազանդ եղողի նման պատուհաս չէք կրեք , այլ հարազատ ծառայի պէս երկնաւոր Թագաւորէն պատիւ առնէք ։

Արդ՝ նախ ձեզի այս պատուէրը կուտամք , հնազանդեալներնուդ հետ մի անիրաւաբար ծանր և անտանելի հարկ դնելով վարուիք , որն որ չեն կրնար տանիլ , այլ օրինօք ամեն մէկը իրենց կարողութեանը համեմատ դատեցէք , միտքերնիդ բերէք որ դուք ալ երկինքը տէր ունիք , և անոր առջևը ակնառութիւն չըլլար · ինչպէս որ Առաքեալն ալ կ'ըսէ՝ Մարդոցմէ մէկը մի զըրկէք , աղքատները և տնանկները մի՛ նեղէք , որ Աստուծոյ գանգատ չընեն ձեզի համար , և Աստուած անոնց կըլսէ · Սողոմոն իմաստունին ըսածին պէս , որ կ'ըսէ Թէ՝ Աղքատին քեզ անիծելու պատճառ մի՛ տար , որ չըլլայ Թէ անոր Արարիչը անոր լսէ ու քեզի պատիժ տայ ։

Ձեր երկրին վրայ բնաւ չար և անիրաւ գործակալներ և վերակացուներ մի՛ դընէք , որ չըլլայ Թէ անոնց գործած անիրաւութեանը համար դուք ալ անոնց հետ Աստուծմէ դատուիք · այլ մարդոց վրայ գործակալութիւն ընելու համար արդարամիտները և արդարադատները դրէք , որ

չըլլայ թէ աշխատողներուն թագաւորական սահմանեալ շատ վարձքը կտրեն, քիչ մը կաշառքի համար, և կամ թէ իրենք գողնան, և իրենց պատուիրուածէն աւելի դանոնք չի նեղեն և չատնեն, քանզի Աստուծոյ առջև երկուքն ալ անիրաւութիւն է, հապա անանկ արդարադատ ըլլան որ թագաւորինը թագաւորին տան, և Աստուծոյ վայելուչը Աստուծոյ տան։

Մէկը անիրաւաբար մի՛ դատէք, այլ ուղիղ դատ կտրեցէք, որ ձեր դատաստանըն ալ քաղցրութեամբ ըլլայ Աստուծոյ առջև, և ոչ խստութեամբ։

Չըլլայ թէ կաշառքի համար կամ մէկ կողմը սիրելով, կամ թէ մէկուն ատելութիւն և ոխակալութիւն ունենալով և կամ խաթեր համար մէկուն խաթր ընելով, դատաստանի մէջ անիրաւը արդարացընէք. և արդարին իրաւունքը ծռէք, ու անոնց համար գրուած Աստուծոյ օրինացը անէծքներուն ինքզինքնիդ պարտական ընէք։

Որբևարիին և աղքատին իրաւունքները երբեք մի՛ ձգէք, երբոր ձեզի կ՚աղաչեն իրենց զրկողներուն համար. հապա՝ որբին դատաստանը կտրեցէք, և այրիին իրաւունքը տուէք, ինչպէս Աստուած Արդարէին

բերնովը կ՚լսէ ․ Անոնց ձայնին ունկնդիր եղէ՛ք , և իրենց նեղութիւն տուողներէն զանոնք ազատեցէք , և անոնց յափշտակուած ստացուածքները անիրաւներէն ետ դարձուցէք ․ այն ժամանակ Աստուած ալ ձեր աղաչանքները կը լսէ և կը կատարէ ձեր սրտին խնդիրները ։

Անբան կենդանիներու պէս որ բնութեամբ մարդոց ծառայ են , մի՛ ծառայեցընէք ձեր իշխանութեանը տակը եղող մարդիկները ծանր ու դժուար գործերու ․ ինչպէս որ փարաւոնը Իսրայելացիները կը ծառայեցընէր ․ այն ալ՝ առանց անոնց կերակուր տալու ․ հապա անոնց ներելով և քաղցրութեամբ , և քիչ ժամանակով և առատագոյն կերակուրներով զանոնք յագեցընէք աշխատած ատեննին , (չափով ու անչափ չէ) , որ կարող ըլլան իրենց աշխատութեամբը իրենց տղոցը և տուներնուն աղքատ կեանքերը լեցունելու և թագաւորական հարկը հատուցանելու ։

Ձեր վաստակաւորներուն վարձքերը իշխանաբար մի՛ կտրէք , ինչպէս անոնք , որոնց համար կ՚ամբաստանեն առաքեալները և մարգարէները թէ՝ ձենէ զրկուածը կը պօռայ , և հնձողներուն ձայնը զօրութեանց

Աստուծոյ ականջը հասաւ։

Բնական ըլլայ ձեզի որ անոնց աշխատութեամբը կը հարստանաք և չափէն աւելի հանգիստ կ'ունենաք, ու այն ալ որ չէ թէ անոնց բնութիւնը ուրիշ բնութիւն մըն է, և ձերինը ուրիշ, հապա երկուքդ ալ մէկ հողէ և մէկ բնութենէ էք։ Որովհետև տէրերուն և ծառաներուն, հարուստներուն և աղքատներուն աշխարհք գալը աշխարհքէն ելլալը ամենունը միօրինակ է։ Վասն զի ամէնքը հաւասարապէս ծնանելով աշխարհք կուգան, և մահուամբ աշխարհէ կ'ելլեն։

Իսկ մեծութիւնը ու պզտիկութիւնը, բարձրութիւնը ու խոնարհութիւնը, բարեբաղդութիւնը ու աղքատութիւնը մարդոց ծննդեանը և մահուանը մէջ կը պատահին. որն որ արթընցող մարդոց երազին նման է, ինչպէս որ փորձով ամենուն յայտնի է, թէ իմաստուններուն և թէ տգէտներուն, որ ասոնց հիչ մէկը հաստատութիւն չունին։

Վասնորոյ անցաւոր կեանքիս համար յաւիտենական կեանքը մի' կորսընցունէք, թէպէտև Քրիստոս մեծատուններուն համար երկինքին արքայութիւնը դժուար կը

մտնեն ըսաւ . ինչպէս որ ուղտը ասեղին ծակէն , բայց թէ որ ձեր մեծութիւնը Աստուծոյ կամացը համեմատ գործածէք , էն դժուարը ձեզի շատ դիւրին կ'ըլլայ ։

Վասն զի Աբրահամն ալ հարուստ էր , և չէ թէ միայն արքայութիւնը մտնելու արժանացաւ , այլ անոր գոգն ալ Աստուծոյ արքայութիւն և արդարներուն հանգիստ եղաւ և անուանեցաւ ։

Նոյնպէս ալ Յոբը և ամեն հարուստ արդարներն ալ, Աստուծոյ ըսածին համեմատ թէ Աբրահամը, Իսահակը, Յակոբը և ամեն արդարները Աստուծոյ արքայութեանը մէջ պիտի տեսնէք ։ Այսպէս ալ դուք՝ թէ որ անոնց համեմատ արդարութեան ճամբան երթաք ։ Վասն զի մէկը չէին զրկեր , մէկը չէին նեղեր , բնաւ մէկուն ստացուածքը չէին յափշտակեր , նենգութիւն և կամ անիրաւութիւն՝ չէին բանեցըներ ուրիշներուն , հապա՝ իրենց արդար վաստակներէն անօթին կը կերակրէին , մերկը կը հագուեցընէին , հիւրերը կ'ընդունէին , կարօտեալներուն կարօտութիւնը կը լեցընէին , նեղեալներուն բաւական օգնական կ'ըլլային , և տկարները կը զօրացընէին , աղքատը և տնանկը չէ թէ միայն չէին նեղեր ,

Հապա նեղողներէն ալ կ՚ազատէին ։

Այս ինչպէս որ անոնց մարմնաւոր փարթամութիւնը երկնքի արքայութիւնը ժառանգելու արգելք չեղաւ ։ Նոյնպէս ալ այդ մեծութիւնը ոչ թէ ձեզի չարեաց պատճառ կ՚ըլլայ, թէ որ առիկա անոնց պէս՝ արդարութեամբ գործածել ուզէք ։ Այլ մանաւանդ բարիի պատճառ կ՚ըլլայ իմաստունին ըսածին պէս թէ՝ Մարդուն գինն է իր մեծութիւնը ․

Իսկ անիկայ որ իրեն ունեցածները կարօտեալներուն տալու տեղ անոնցը կը յափշտակէ, և կը կողոպտէ, և անոնք իրեն տանը կանչելու և ճամբան հօգնողները հանգչեցնելու տեղ գողերուն գողակից կ՚ըլլայ, և նաև անոնց որոգայթ կը լարէ, որոնք որ անմեղութեամբ իրենց ճամբան կ՚երթան, և իրեն տունը անիրաւ ստացուածքներէն կը լեցընէ և հարստանալ կը կարծէ ։

Ըսենք այն մարդոց աններելի յանցանքները․ որոնք չէ թէ միայն ստացուածքները կը յափշտակեն, հապա նաև անմեղաց արիւնը կը թափեն որ իրենց ստացուածքը յափշտակողներուն դատախազ չըլլան, և ամենևին մտքերնին չեն բերեր թէ մեր վրայ ամեն բանը տեսնող ուրիշ դատաւոր մը

կայ, ուսկից չեն կրնար իրենց չարեաց գաղտ-նիքը ծածկել :

Ասանկ հարուստներուն համար յիրաւի Քրիստոս կը հրամայէ թէ երկնից արքա-յութիւնը դժուար պիտի մտնեն, որոնց բը-նակութիւնը արքայութիւնը չէ, հապա գե-հենի հուրը, և իրենք ընդունողը՝ անքուն որդը և յաւիտենական տարտարոսն է :

Աս ալ իրաւամբ՝ վասն զի թէ որ ա-նոնք որ իրենց արդար ստացուածքներէն անօթիները չեն կերակրեր, և մերկերը չեն զգեցըներ, և օտարները չեն ժողովեր, ա-նանկները դատաստանին օրը Քրիստոսէն այս խօսքը պիտի լսեն թէ՝ Անիծեալներ յա-ւիտենական հուրը գացէք :

Ապա՝ անոնք որ աղքատին առաւել անօ-թութեանը և տառապեալին մերկութեանը և օտարին հարստութեանը և անձին կորըս-տեանը պատճառ կ՚ըլլան, և բանտարգելա-ները տեսնելու և բանիւ և գործով մխի-թարելու տեղ արձակուած անմեղներուն բանտ մտնալուն ու կապանքին պատճառ կ՚ըլլան :

Արդեօք այնպիսիներուն տեղը ու տան-ջանաց չափը ո՞ւր պիտի ըլլայ, միայն թէ սատանայի ու անոր հրեշտակներուն հետ,

որոնց որ կամքը կատարեցին ։

Վասնորոյ կ'աղաչեմ ձեզի այս կորըստեան գործքերէն մէկդի քաշուիք ամենքնիդ ալ ։ Ու մէկը մնաց պատճառները յառաջ չի բերէ, ըսելով, թէ որ չի զրկենք, և չի յափշտակենք մեր իշխանութիւնը չի կրնամք պիտի հաստատուն պահել ։ Ասոր վրայօք նախ և առաջ այս կ'ըսեմք որ, թէ որ իշխանութիւն ունեցողներուն Աստուծոյ հաճելի ըլլալը անկարելի էր, հապա ի՞նչպէս շատ թագաւորներ և իշխաններ Աստուծոյ և մարդկան գովելի եղան, որոնք սուրբ գիրքերուն մէջ ալ կը յիշատակուին ։

Դարձեալ ձեր ըսածին համեմատ թէ որ անհնար էր առանց զրկանքներու իշխանութիւն բանեցընել, անանկ է նէ ան՝ որ իմաստուն է նէ փախչիլ պէտք էր այս անցաւոր իշխանութենէ, և չէ թէ իշխանութեան համար յաւիտենական տանջանքով սատանային հետ տանջուիլ ։

Բայց անհնար չէ առանց անիրաւութեան իշխանութիւնը վարելը, հապա՝ դիւրին և փափաքելի է, որոնք կը սիրեն և կ'ուզեն, և մենք ալ Աստուծոյ առջև կը վկայեմք, և ամենուն երաշխաւոր կ'ըլլամք ։

Վասն զի թէ որ մէկը իւր տունը զըր-

կանքներէ մաքրէ՝ և միայն իրաւունքով վաստըկածները անտեղ ժողովէ, թէև կ'երևայ թէ քիչ է, առաւել շահեկան կ'ըլլայ, և Հարստութեան պատճառ, ամէն անիրաւ ստացուածներէն աւելի։ Նաև այս խօսքը Սողոմոն իմաստունն ալ կը յայտնէ ըսելով թէ՝ Աստուծոյ անէծքը ամբարիշտներուն տանը մէջ է, իսկ արդարներուն տունը կ'օրհնուին։ Որովհետև սակաւ ինչ անիրաւը իրաւունքով շատ ստացուածքները հրոյ նման կ'երէ և կ'ապականէ, ինչու որ անիրաւին զրկածներէն ժողվածը անէծքով ու դառնութեամբ է, և աղքատներուն անէծքին հետ Աստուծոյ անէծքն ալ այն զրկողներուն տունը կը մնայ։

Իսկ արդարին տունը, որովհետև զըրկանքներէն սուրբ է, և անօթեցողներուն կերակրող է, աղքատաց օրհնութեանը հետ Աստուծոյ օրհնութիւնը ծածուկ ու գաղտնի մնալով քիչը կը շատնայ, Սոմնացի և Սարեփթացի այրիին նման կամ անոնց՝ որ մեր տէրը անապատին մէջ կերակրեց։

Նաև անմիտներէն և մարմնասէրներէն մէկը զրկողներուն և ամբարիշտներուն շատ ստացուածքները, և իրաւամբ և արդարութեամբ ստացողներուն ալ ընչից սակաւու-

թիւնը տեսնելով, թող մեր խօսքին վրայ չի խնդայ, հապա թող այն մարդը լսէ Դաւիթ Աստուածահայր մարգարէին որ կ'ըսէ, Աղէկ է արդարին քիչ բանը՝ քան թէ մեղաւորներուն շատ հարստութիւնը ։

Նոյնպէս ալ անոր որդւոյն Սողոմոն իմաստունին որ կ'ըսէ, Ամեն աշխարհ ստացուածքով լեցուն է արդարին համար, իսկ ամբարիշտը ստակ մ'ալ չունի ։

Եւ դարձեալ աղէկ է կ'ըսէ հանդարտութեամբ բանջարով ապրիլ, քան թէ անիրաւաբար չէն կերակուրներով ։

Յիրաւի է այս բանը՝ ինչու որ՝ անոնք որ իրենց արդար ստացուածքներէն կը կերակրին, Աստուծմէ ընաւ պատիժ չեն կրեր ։ Իսկ այն մարդիկը որոնք գողութեններէն յափշտակութեններէն և զրկանքներէ իրենց սեղանը կը լեցընեն, ուրիշի հարստութեամբը առատապէս վայելածնին շահովը պիտի հատուցանեն դատաստանին օրը ։

Հաւատոյ պահքը գինիով և ձուկով մի ուտէք իշխանաբար, որ չըլլայ թէ անհամբերներուն հետ դատուիք ։

Դարձեալ այս ալ կ'ըսենք թէ՝ ստութիւնը ու խաբէութիւնը զորն որ Քրիստոս հրամայեց թէ չար սատանայէն է, թէ-

պէտ ամեն մարդու վնասակար է, բայց առաւել մեծերուն և իշխաններուն, ինչու որ փոքրը անզօր ըլլալուն համար, իւր խօսքը ստութեամբ հաստատելու, և հաւատալի ընելու կը ջանայ: Իսկ մեծին իր ձեռքն է ուզածը ընելը, երբոր իրաւունքը անտես ընէ նէ:

Դարձեալ ռամիկ մարդը թէ որ սուտ բան մը կը խօսի, կամ թէ որ և իցէ գէշ բան մը կը գործէ, այնքան յայտնի չըլլար, և ոչ ալ հրապարակաւ կը նախատուի: Իսկ մեծին պզտիկ պակասութիւնը հեռաւորները և մերձաւորները հայհոյելուն և նախատելուն համար կը բարձրացընեն. այլ և չարասէրները չարութեան օրինակ կ'առնեն մեծերուն քանի մը պատուիրանազանցութիւնը:

Վասնորոյ կ'աղաչեմ ձեզի որ խաբէութեան և ստութեան խօսք չընեք. ոչ ձեզի հնազանդողներուն և ոչ դուրսիններուն: Հապա որու որ խօսքով բարութիւններ կը խոստանաք, նոյնը գործքով կատարեցէք. վասն զի Աստուծոյ և մարդկան առջեւը հաճելի բանը այս է, և նաև ամեն բերնէ ալ գովութեան պատճառ է:

Նաև ձեր զինուորներուն և ամենուն ա-

րոնք որ ձեզի կը ծառայեն, ձեր սահմանած թօշակը (թային) մի պակսեցընէք. վասն զի ասիկայ մեծ անիրաւութիւն և զրկանք է: Որովհետև ինչպէս որ անոնք ձեր տըւած պարգևներուն համար պարտական են իրենց արիւնը ձեզի համար թափելու. անանկ ալ դուք պարտական էք ձեր խոստացած թօշակը կատարելապէս հատուցանելու:

Նաև չափէն աւելի անոնց վրայ բռնութիւն մի բանեցընէք, որ չըլլայ թէ ձեզմէ անիրաւաբար բանտ և պատուհաս կրելու վախէն գաղտնի փախչին, ու ձեզի տուած երդմանցը ուրացող ըլլան, և երկու կողմին ալ թէ ձեզի և թէ անոնց մեղք ըլլայ: Հապա թէ որ մեր խօսքին և մեր խրատին կը հաւնիք, այս կանոնը դրէք ամենուն՝, որոնք որ ձեզի կը ծառայեն. որչափ կամք ունին ձեր ծառայութեանը մէջ կենալու, ձեզի հաւատարմութեամբ ծառայեն եւ առանց նենգութեան, և ով որ ձեր ծառայութենէն ելլալ ուզէ, ձեզմէ յայտնի հրաման թող առնէ առանց վախի. և դուք ալ որ՛ որ երթալը չէք ուզեր նէ՝ սաստիւ, և բռնութեամբ անոնց արգելք մի ըլլաք, հապա՝ սիրով և իր կամքովը, և ուրիշներուն ալ քաղցրութեամբ հրաման տուէք և թէ որ

պատարագ մը ուզէք նէ հասուցէք անոնց : Ո՛չ երբոր անոնք ձեր քովը անանկ արդարութիւն տեսնան, կամ չեն երթար և կամ թէ երթան շատ ատեն ձեր քովը կը դառնան, ու երդմնապանծութեան խղճէն անոնք և ձեզ կ'ազատէք, ու անիկայ ձեզի Աստուծմէ մեծ վարձուց պատճառ կ'ըլլայ :

Դարձեալ չըլլայ որ կարծէք, Աստուծոյ անունը կամ աւրը Աւետարանին և կամ Խաչին վրայ առանց երևելի պատճառի մը երդում դնէք : Վասն զի Քրիստոս երդում ըրած Աւետարաններուս մէջը կը հրամայէ թէ՝ Ամենևին երդում չընես ; չէ թէ միայն արարչին վրայ, նաև ոչ արարածներուն, ոչ երկնքի և ոչ երկրի, և ոչ ալ քու գլխուդ վրայ, հապա ձեզի ամենուն անանկ ճշմարտախօս ցուցըցէք, որ ձեր լոկ խօսքերուն երդման պէս մարդիկ հաւատան : Ան է որ երդում ընելու մէկ մեծ պատճառ մը ըլլայ, ամենևին մէկը անանբեկի յանցանքով մեղք չի գործէ, երդումները ուրանալով ու երդումը չի բռնելով ; վասն զի երդումը ուրանալը աւելի չար է, քան թէ զայն որ մահուան վախէն անհաւատից առջին կ'ուրանան : Որովհետև անիկայ մահուան բռնութենէն և տանջա-

նաց փախէն է, և ատիկայ կամքով և քիչ մը կորստական շահու համար է․ ու ասոնց մէջ զանազանութիւն կայ, ինչպէս կամաւ ու ակամայ եղած մեղքին մէջ։

Եւ չէ թէ միայն հաւատակից քրիստոնէաներուն առջևը պարտ է երդումը առանց ստութեան պահել, հապա այլազգիներուն ալ առջևը, և մանաւանդ առաւել անոնց առջևը որ Աստուծոյ անունը և քրիստոնէութեան հաւատքին անոնցմէ հայհոյելու պատճառ չըլլայ։

Քանզի թէ որ հրէայք կռապաշտ Նաբուգոդոնոսոր թագաւորին երդմնազանց ըլլալով, Աստուած ալ անոնց քաղաքը ու ազգը անոր ձեռքը մատնեց։ Ո՞րչափ ևս առաւել հիմա Աստուած կը պատուհասէ անոնք, որոնք կը ստեն և կ՚ուրանան անոնց ըրած երդումին։

Զըլլայ թէ մէկը այս առաջնիս գնէ, թէ որովհետև մեզի անոնք սուտ երդում կ՚ընեն, պէտք է որ մենք ալ անոնց ընենք։ Բայց մեր ըրած երդումը անոնց ըրած երդմանը հաւասար չէ, որովհետև մերը ճշմարտութեան վրայ երդմննալ է․ իսկ անոնցը այնպէս չէ։ Վասն որոյ մենք ալ իր տիրոջը կամքը գիտցող ու չընող ծառաներու պէս շատ ծեծ

կ՚ուտեմք, անոնք տգէտներու պէս քիչ ։

Գուրձեալ կ՚աղաչեմ որ չըլլայ թէ բարկանալով և անարդար իրաւունքով կամ պատիժ տաք մարդուն և կամ մահուան վճիռ տաք ։ Ջէրէ այս նոր օրէնքը ասանկ չեն հրամայեր և հին օրէնքը թէպէտ և կը հըրամայէ, բայց ո՛չ զուր տեղը, հապա յանցանքին արժանաւորութեանը համեմատ ամեն մէկը խրատի կամ մահուան դատել ։

Վասն որոյ դուք ալ որ իշխանութեան վրայ էք նէ, թէպէտ և նոր օրէնքը անկարելի է կ՚ըսեք պահելը ։ հին օրինաց հրամանները որ այս տեսակ բաներու համար է կատարեցէք ։ Իսկ թէ որ առանց օրէնքի անիրաւաբար մարդիկները մահուամբ կամ խրատով կը դատէք, աղէկ գիտցէք որ դատաստանին օրը մեր Տէրը ձեզմէ պիտի ուզէ սպաննուածներուն արիւնը ու պատժըւածներուն կտրուած անդամները ։

Նաև այս պատուիրանքն ալ ձեզի կուտամք որ վրէժխնդիր և քէն պահող չըլլաք, որուն համար Եսայի մարգարէն կը նախատէ Իսրայելացւոց իշխանները, հապա Քրիստոսի հրամանին համեմատ ամենուն ներող ու համբերող եղիք, որոնք որ ձեզի յանցանք մը ըրեր են, որով դուք ալ Քը-

խօսքով ուզեց յայտնի ցուցընել հեթա-
նոսներուն քրիստոնէից ճշմարիտ օրէնքը
թէ՝ մեր օրէնքը չի սիրեր տէրանց նենգու-
թիւն ընել, հապա հաւատարմութիւն կը
սիրէ. որ հայհոյութեան խօսք չի խօսին
մեր օրէնքին ու հաւատքին, երբոր մէկը
իրենց նենգաւոր տեսնան նէ։

Ու թէ որ ձեր տէրերէն վերակացու-
թեան գործի վրայ դրուիք կամ թէ խրկուիք
մէկ գործ մը տեսնալու համար, արդարու-
թեամբ ու ճշմարտութեամբ վարեցէք հնա-
զանդողներուն հետ. մի՛ նեղէք մէկը անո-
ղորմաբար արտաքոյ արդարութեան, ու մի՛
զրպարտէք մէկը անգութ բնութեամբ ձեզ-
անոնց քով դահիճի պէս ցուցընելով, ու
ձեզի ի՛նչ որ կը հրամայուի նէ՝ անկէ աւել
չընեք սուրբ Մկրտչի խրատին համեմատ,
հապա ձեր վարձքովը բաւականանաք, ու
ամենուն հետ ողորմութեամբ ու սիրով վար-
ուեցէք որ դուք ալ ողորմութիւն գտնաք
Աստուծմէ. և չըլլայ որ այդ գինուորու-
թեանը համար Աստուծոյ պատուէրները
արհամարհելով անհնազանդ ըլլաք ձեր ա-
ռաջնորդներուն. որոնք կը խրատեն ձեզի
Աստուծոյ պատուէրները պահելու ; կամ
սուրբ պահքերը անօրինաբար աւրէք, կամ

թէ աղքատաց ունեցածներուն յափշտակութիւնը ու անպարտ արեանց հեղմունքը մեղք չի սեպեք. վասն զի հասարակաց պատերազմական սպանմունքներէն զատ, որոնք թագաւորաց հրամանաւը կ'ըլլան. ձեր ըրած ուրիշ սպանութիւններնուդ համարը ձենէ պիտի պահանջէ Աստուած ծանր ու անաչառ դատաստանաւ ։

Նոյնպէս ան բաներն ալ որ բռնութեամբ՝ ձեր սահմանեալ վարձքէն աւել անիրաւաբար աղքատներէն կը յափշտակէք՝ կամ ձեր տիրոջը ստացուածները կը գողնաք՝ վճարէք պիտի առանց պակասութեան դատաստանին օրը ։

Նաև հասարակ ժողովուրդէն աւել ձեզ պէտք է վախնալ Աստուծմէ, ու անոր պատուիրանները պահել. վասն զի ամէն ժամանակ թշնամւոյն սուրին դէմ պիտի պատերազմիք, անոր համար, քան թէ մարմնական զէնքով՝ հաւատոյ զէնքովը վառուեցէք. այսինքն՝ Աստուածպաշտութեամբ՝ ու սրբութեամբ՝ արդարութեամբ՝ պահքով՝ ու աղօթքով՝ և ողորմութեամբ, որ օգնական ըլլայ Աստուած պատերազմներուն մէջ ու թշնամիները յաղթէ ձեր առջին ։

## Քաղաքականներուն :



ԱԼ պատուիրեմք ձեզ քաղաքականաց ալ, ու ձեզի որ կը նստիք վաճառատեղիները գնելու ու վաճառելու. և ձեզ արուեստաւորաց ալ, որ վարէք ձեր կեանքը ուղղութեամբ ու անարատ քաղաքավարութեամբ :

Ու չի ծախէ մէկը նենգութեամբ՝ ու խաբէութեամբ՝ իր ստացուածը անմեղ գնողներուն. մանաւանդ՝ ստախօսութեամբ՝ ու սուտ երդումով ռամիկները ու տգէտները խաբելով. վասն զի դատաստանին օրը այնպիսին գողերու ու յափշտակողներու հետ պիտի դատուի, ու կ'առնէ Աստուած իւր բարերարութիւնը ու անկէ զրկուածներուն կուտայ :

Ու չըլլայ ձեր քովը մեծ ու պզտիկ կշիռ ու կրկին չափ, վասն զի գէշ է երկուքն ալ Աստուծոյ առաջը. ինչպէս ըսաւ Սողոմոն, Հապա արդարութեամբ ու ճշմար-

տութեամբ վաճառեցէք ձեր ձեռաց գործը ու ծախուելու նիւթը որ զրկուողներուն անէծքը չերէ ձեր ունեցածները , հապա Աստուծոյ օրհնութիւնը մտնայ ձեր տուները . ու մ՚արհամարհէք գեղջուկները չի գիտցողի նման իրենց պարզամտութեանը համար . քանզի եւելօք կը սիրէ Աստուած անոնց արդարամիտ կեանքը . քան թէ նենգաւորները ու խաբեբաները :

Ձեր արծաթը վարձու մի՛ տաք , Մարգարէին ըսածին նման , Անոնց որ իշխողաց բռնութենէն կը նեղին , ու դուք կ՚ուտէք անոնց աղքատութեան վաստակը վաշխի երեսով . հապա եղբօր պէս անօգնական ու ցաւակից եղէք իրարու .

Ու ինչ որ անոնց փոխ կուտաք մինակ ան ուզեցէք անոնցմէ , որ բազմապատիկ վարձ շահիք Աստուծմէ անանց կեանքին մէջ . ինչպէս Քրիստոս կը հրամայէ , Չէ թէ միայն առանց վաշխի տալ , հապա տուէք անոնց որոնցմէ յոյս չունիք առնելու :

Ու ձեր ամեն ունեցածէն տուէք կարօտելոց ու աղքատներուն , որ անով օրհնուի ձեր ամեն բանը , ու առնէք փոխարէնը Քրիստոսէն դատաստանին օրը :

## Երկրագործներուն և բոլոր ժողովուրդներուն :

---

Երկրագործներ, ու համօրէն ժողովրդականներ Աստուծոյ պատուիրանին խրատը լըսեցէք, որ կուտամք ձեզի : Որ ձեզի մանաւանդ առաւել պէտք է հոգևորական դեղ, հոգիներնուդ բժշկութեանը համար, որ դուք ալ մեղաց հիւանդութենէն առողջանաք :

Ու կ'աղաչեմք ձեզի որ աս անցաւոր կենաց հեշտութեամբը, հոգիներնուդ յաւիտենական ուրախութիւնը որ երկնից արքայութեանը մէջ կը վայելեն Սուրբերը չի կորսընցընեք :

Եւ որովհետև Աստուծոյ տաճար էք դուք, ինչպէս Առաքեալը ըսաւ, և Աւազանին մկրտութեամբը Հոգին սուրբ 'ի ձեզ բնակեալ է, Աստուծոյ տաճարը որ ձեր հոգիներն են, շնութեամբ և պղծալից պոռնըկութեամբ մի ապականէք, որ Աստուած ալ զձեզ չապականէ դատաստանին օրը գե-

Հենին հրովը, ինչպէս որ Պօղոս կը գրէ ։

Մի՛ գինովնաք գինիով՝ որ գեղխութիւն ու յիմարութիւն է, ու ամէն պոռնկութեան ու պղծութեան ու անիրաւութեան ու կռիւի ու ամէն անարգ աղտեղի խօսից մայրն է, որ ասկէ սպանում ալ կ'ըլլայ. որ չըլլայ թէ սպաննողներուն ու չարագործներուն հետ Աստուծոյ արքայութեան ժառանգութենէն դուրս իյնաք, առաքելական խօսքին համեմատ ։

Ու եթէ ձեզմէ մէկը այս կամ ուրիշ յանցանքով Աստուծոյ դէմ մեղանչեց նէ, մինչև մեռնելու օրը այն աղտեղի սովորութեանը մէջ չի կենայ միշտ՝ այլ խոստովանութեամբ ու ապաշխարութեամբ իւր յանցանքը քաւէ, ու անկից ետքն ալ չարին տեղը բարի գործէ ։

Դարձեալ ձեր լեզուն սատանայի գործի մ'ընէք, չար ու գէշ Հայհոյութիւն ընելով, մանաւանդ անոնք որ հաւատքը, ու հոգին, ու Աւազանին մկրտութեանը, ու մկրտիչ քահանայն, ու երեսը, ու բերանը կ'անարգեն, որ աս յանցանքը ուրացութենէն ու թլփատութենէն մեծ մեղք է. որովհետև այլազգիք քրիստոնէին հաւատքը ուրանալ կուտան նէ Աստուած անարգել չեն տար.

իսկ՝ ան որ հաւատքը կ՚անարգէ մարդը չա-
նարգեր, այլ Աստուած. վասն զի ամէն Աստ-
ուածապաշտին հաւատքը Աստուած է, ու-
անոր մկրտութիւնը ու մկրտող քահանայն
կ՚անարգէ նէ՞ ան անարգութիւնը Հոգւոյն
սրբոյ կը վերաբերի. վասն զի Աւազանին
մէջ մկրտուողները անով կը ծնանին, ու ան՝
որ մարդուն հոգին և երեսը կ՚անարգէ, ան
հայհոյութիւնը Աստուծոյ կ՚երթայ, որով-
հետև հոգին Աստուծոյ շունչն է ու երեսն
ալ Աստուծոյ պատկերն է, և բերանն ալ
Քրիստոսի մարմնոյ և արեան ընդունողն է։

Ու արդ Հոգւին սուրբը մի տրտմեցը-
նէք ասանկ գէշ և աղտեղի խօսքերով, որ
Հոգին սուրբ ձեզմէ չի հեռանայ. որ Աւա-
զանին մէջ ձեր վրայ բնակեցաւ, և անոր
տեղը չի գայ նստի սատանային հոգին ձեր
սրտին մէջ։

Դարձեալ այս պատուէրն ալ առ հա-
տարակ ամէն հաւատացեալներուդ կուտամք,
որ ձեր տղաքը Աստուծոյ երկիւղովը մեծ-
ցուցէք, անոնց խրատ տալով մանկական
հասակէն ողորմած, աղօթասէր, Աստուա-
ծասէր ըլլալու, ու անոնց աղօթք սորվե-
ցուցէք, ու սաստեցէք անոնք որ գէշ խօս-
քերու և հայհոյութիւն ընելու չի սորվին.

վասն զի մանկութեան ժամանակը ծնողաց խրատը առնուել կը հաստատուի տղոցը մտքին մէջը չուրուելով՝ որուն տեղը առաքինութեան վարձք ալ կ'առնէք Քրիստոսէն ։

Նաեւ ամէն բարեաց գլուխ սէրը՝ իրարու ունեցէք, աղքատներուն, մերկերուն, հիւրերուն և բանտարգելեալներուն ու հիւանդներուն ալ գութ և ողորմութիւն ցուցըցէք. որով արքայութեան ժառանգ ըլլաք. Յիսուսի Քրիստոսի շնորհիւը ։



## ԿՆՃՆԵՐՈՒ ։

ԿԱՆԱՆՑ ալ պատուէր կուտամք ամէն բանի մէջ պարկեշտութեամբ և բարեձեւութեամբ ըլլալ ինչպէս որ քրիստոնէից կը վայլէ, ոսկիէն և արծաթէն աւելի ամօթխածութեամբ և պատկառանօք ինքզինքնին զարդարելու ։

Ու մէկը անմիտ երիտասարդաց գայթակղութեան միջաց պատճառ ըլլալու համար՝ օտար դեղերով իրեն դէմքին գոյնը չի

փոխէ, որ չըլլայ Թէ իր և իրեն ցանկացողին հոգին անօրէնութեան գուբը ձգէ ։

Ու մէկը սատանային գործիք ըլլալով օձին նմանող չըլլայ, զորն որ հաւատ կ'անուանին որ ինչպէս որ անիկա խաբէութեամբ մահուան պտուղը Եւային տուաւ, նոյնպէս ալ ասիկայ անմիտ կանանց և անմիտ արանց մեղաց մահաբեր պտուղը ճաշակել կուտայ՝ որ նախ անմտաց քաղցր կ'երևի ու կատարուելէն ետքը քան զլեղի դառն, այնպիսին Աստուծմէ օձին անէծքը կ'առնէ որ անոր գործքը կատարեց ։

Դարձեալ ձենէ մէկը սատանայական կախարդութեան և աղանդաւոր դեղատուութեան չի հեռևի. վասն զի ուրիշ մեղքերուն վնասը գործքին վրայ կը կայանայ ու ասիկա հաւատքի վրայ է, վասն զի կախարդութիւնը սատանայէն է, ու Թէ որ մէկը նախ Աստուծմէ չի հեռանայ ու ինքըզինքը սատանայի պաշտօնեայ և երկրպագող չընէ կախարդութիւնները չի յաջողեր ։

Վասն որոյ կ'աղաչեմք ասանկ մեծ և աններելի չարիքներէն հրաժարիլ, որ անանկը սատանային հետ դժոխքի հրոյն մէջը չի պատժուի, որ ասիկայ կռապաշտից գործ է և ոչ քրիստոնէից. զորն որ Քրիստոս իր

գալստեամբը կուռց մոլորութիւնը և անոր չար գործքերը վերցուց յաշխարհէս ։

Արդ մէկը դարձեալ սատանային գոր-ծակից չըլլայ կախարդական չար գործքերո-վը, որ անոր հետ յաւիտեան գեհեննին հը-րոյն մէջը չայրի ։

Ձեզի Աստուածային պատուիրանքներէն զատ գրելու բան կար մեղաց և ամենայն չար գործքերէն զգուշանալու․ բայց գրա-ծէս պակասը ձեր եպիսկոպոսներէն և քա-հանաներէն կրնաք սորվիլ, որոնք ձեր հո-գիին Աստուծմէ վերակացու դրուած են, և ամեն օր ձեզի Քրիստոսի ճշմարտութեան խօսքը կը սորվեցընեն ։

Մենք ալ կ՚աղաչենք Աստուծոյ որ ձե-նէ քարեղէն սիրտը հանէ՝ և մարմնեղէն սիրտ տայ պարարտ երկիր ըլլալու, ու ձեր հոգւոյն վրայ մեր խօսքին սերմը աճեցընե-լու որ հարիւր չափով պտուղ տաք, որպէս զի դատաստանին օրը արդար դատաւորին առջին ուրախ և անտրտում դէմքով ըսենք թէ՝ Ահա ես և իմ մանկունքներս որ ինձի տուիր, ու ձեզի հետ աջ կողմը եղողներուն քով յաւիտենական կենաց մէջը տեղի ու-նենանք, Յիսուսի Քրիստոսի շնորհիւը, որ յաւիտեան օրհնեալ է․ ամէն ։